# Содействовать диаспоре в сохранении армянства





В рамках программы «Работа с общинами» 16 ноября в Калужском областном центре состоялась встреча с министром диаспоры Республики Армении госпожой Грануш Акопян.

В своем турне по России госпожа Акопян впервые посетила Калугу. Встреча с армянской диаспорой Калуги, в которой принимали участие более 300 человек – видные деятели культуры и науки, интеллигенции, представители студенческой молодёжи, средств массовой информации и другие, проходила в молодежном центре. Во время встреч в Калуге Грануш Грантовна, приветствуя участников, особо отметила ту роль, которую играют и церковь, и общественные организации, в частности, Союз армян России, в деле становления, укрепления и развития армянских общин в России. Она рассказала о результатах работы возглавляемого ею министерства диаспоры за первые пять лет своего существования и обозначила те планы и проекты, которые намечены на ближайшее время.








Грануш Акопян: «Министерство диаспоры не только состоялось, но и стало развивающейся и перспективной структурой, которая занимается решением вопросов повестки дня армянства. Оно является звеном, которое связывает диаспору с Родиной, укрепляет и направляет эту связь.

Министерство своей 5-летней работой доказало целесообразность координации отношений с диаспорой и централизации связей с государством. В результате работы создана атмосфера взаимопонимания, доверия и сотрудничества, благоприятная для объединения потенциала всего армянства, укрепления Армении и сохранения армянства в диаспоре. Так президент Саргсян отметил пройденный нами путь. Думаю, объективнее всего нас оценивают те, с кем мы имели возможность работать, кто был непосредственным участником наших программ, нашим партнером. А оценка главы государства еще и ставит перед министерством новые задачи.

Должна добавить, что министерство выносит многие важные проблемы диаспоры на обсуждение в правительстве РА, по многим вопросам принимаются правительственные решения. Это означает, что в деятельности образовательных, культурных, общественно-политических, благотворительных, религиозных, молодежных, информационных и иных организаций участвует – всем арсеналом инструментов государства – Республика Армения.

Создавая в 2008 году Министерство диаспоры и претворяя в жизнь одно из важных положений своей предвыборной программы, президент поставил перед ведомством три важнейших стратегических задачи: сохранение армянства в диаспоре, концентрацию национального потенциала и его использование для развития Армении и Арцаха, стимулирование репатриации. Вся пятилетняя деятельность министерства, его программы были направлены на решение именно этих задач.

В перспективе мы будем продолжать развивать новые программы.

Наша сверхзадача – содействовать диаспоре в сохранении армянства. Мы стараемся предлагать разбросанным по всему миру армянам различные программы, по возможности вовлекать их в армянские реалии, поддерживать связь с Арменией, ее

# ՍՊԻՏԱԿ. ՏԱՍԸ ՀԻՐՈՍԻՄԱ



1988 թվականի դեկտեմբերի 7, ժամը 11:41, Հայաստանի հյուսիսում տեղի ունեցավ ըստ Ռիխտերի սանդղակի 10-բալլանոց երկրաշարժ: Դուրս ժայթքած էներգիայի ուժը համարժեք էր Հիրոսիմայի վրա նետած 10 ատոմային ռումբի պայթյունին: Սպիտակ քաղաքն ու էպիկենտրոնին առավել մոտ 58 գյուղ հիմնովին հողին հավասարվեցին: Լենինականը (Գյումրի), Ստեփանավանը, Կիրովականը (Վանաձոր) սաստիկ ավերվեցին: Զոհվեց 25 հազար մարդ, վիրավորվածների թիվն անցավ 17 հազարից, անօթևան մնաց 514 հազար մարդ:

## ԻՆՉՊԵՍ ՀԱՅՏՆՎԵՑԻ ԱՅՆՏԵՂ

Սպիտակի երկրաշարժի լուրն առնելու պահին ես ՈւԽՍՀ ԳԱ գեոֆիզիկայի ինստիտուտի երիտասարդ մասնագետներից մեկն էի: Մենք սերտորեն համագործակցում էինք Հայաստանից ու Վրաստանից մեր կոլեգաների հետ: Գործնական հարաբերությունները վերաճել էին բարեկամականի: Այլ կերպ հնարավոր էլ չէր գործուղման գնացողներիս հարավցիների ցույց տված ջերմագին ընդունելության ու յուրաքանչյուր դիսերտացիայի պաշտպանությունից հետո ճոխ կերուխումի պարագայում: Այդ պատճառով միանգամայն բնական էր ղեկավարության որոշումը՝ օգնություն ուղարկել կոլեգա ընկերներին և միաժամանակ երկրաշարժի գոտում գեոֆիզիկական հետազոտություններ անցկացնել:

Աղետից մի քանի օր անց զույգ ԳԱԶ-66-ից ու երկու ՈւԱԶ-ից բաղկացած փոքրիկ շարասյունը ճանապարհ ընկավ դեպի Լենինական: Բեռնատարների ֆուրգոնները լցված էին տաք հագուստով, քնապարկերով, սթերքով. այն ամենով, ինչ կարող էր առաջին հերթին պետք գալ վայրկյանների ընթացքում ամեն ինչից զրկված մարդկանց:

## ԱՎԵՐՈՒՄՆԵՐԻ ԳՈՏՈՒՄ

Հիմնավորվեցինք մենք տեղի գեոֆիզիկայի ինստիտուտի տարածքում: Ինստիտուտի աշխատակիցներին մենք սովոր էինք տեսնել կոստյում-փողկապով, գրատախտակի մոտ խրթին հաշվարկներ ներկայացնելիս կամ սեղանի շուրջ՝ կոնյակի գավաթը ձեռքերին: Այժմ մեր առջև կանգնել էին սմքած մարդիկ՝ բանվորական տաք բաճկոններով ու սապոգներով: «Այ թե ժամանակ գտար մեզ այցելելու, Անդրեյ: Մարդավայել դիմավորել էլ չենք կարող քեզ», - տխուր կատակում էին նրանք:

Մինչ նրանք զբաղված էին բերած օգնությունը բաժանելով՝ մենք փորձում էինք գոնե ինչ-ինչ գիտական տվյալներ ստանալ այդ շրջանում երկրակեղևի վիճակի մասին: Այդ նպատակով շրջեցինք ամբողջ տարածքով: Ուղևորությունները թույլ տվեցին ընդհանուր հայացք գցել տեղի ունեցածին: Չգիտես ինչու, հիշողությանս մեջ դաջվել է ճամփաբաժաններից մեկի վրա լքված տանկը: Աղետից հետո առաջին ամսվա ընթացքում Հայաստան ժամանածները պիտի որ հիշեն այդ տանկը: Ոչ անձնակազմ կար, ոչ հսկողություն, անտեր-անտիրական կանգնած էր: Այդպես էլ անհայտ մնաց՝ ինչո՞ւ էր այդտեղ կանգնել-մնացել: Վերադառնալուցս հետո մեկ-երկու ամիս անց «Կոմսոմոլկայում» կարդացի, որ դրանով հետաքրքրվել էին ավերված քաղաքներում վերականգնողական աշխատանքներ կատարող ուսանողները: Բուհերում ռազմական ամբիոնի տված գիտելիքները բավարար էին եղել, որ տղաները շարժիչը գործի գցեին ու տանկը քշեին-հասցնեին... քաղգործկոմի շենքի մոտ: Շվարած զինվորականներն ու չինովնիկները երկար ժամանակ գլուխ էին ջարդում, թե որտեղից է ընդհանրապես այդ տանկը հայտնվել ու ինչ անեն դրա հետ...



Մենք Լենինական ժամանեցինք այն պահին, երբ փլատակների տակ ողջ մնացածներ գրեթե չէին մնացել: Ավերված բազմահարկերի փլատակների տակից դուրս էին բերվում մարմինները: Առաջին օրերին սարսափելի էր գիտակցելը, որ մեր կողքին, մի քանի մետր այն կողմ անհամար անշունչ մարմիններ են:

Չգիտես ինչու, հիշողությանս մեջ մնացել է ստվարաթղթե տնակի պես ծալված սենյակը, որ ժամանակին որպես ննջարան էր ծառայել: Հատակի ու առաստաղի միջև տարածությունը կես մետրից ավելի չէր: Պատը փլվել էր, և երևում էր, որ ներսում ճխլված մահճակալ է, ջարդված հեռուստացույց: Մի անգամ երեկոյան, երբ արդեն մութն ընկել էր, վարորդը խնդրեց գնալ ծանոթի մոտ, որը մասնակցում էր քաղաքի ծայրամասում փլատակների մաքրման աշխատանքներին: Նստած ենք զինվորական վրանի ներսում, թեյ ենք խմում: Մեզ միացավ սլավոնական արտաքինով մի տղա: Ռուսաստանից է, զոդող է աշխատում: Թեյով բաժակը ձեռքերի մեջ նկատելի դողում է: Պատմում է, որ մոտերքում՝ մթան մեջ երևացող բետոնի կույտը մանկապարտեզ է: Ոչ մեկը ողջ չի մնացել: Այժմ արդեն չեն շտապում. էլ ոչ մեկին չես փրկի, մարմիններն են հանում: Ավելի ճիշտ՝ փոքրիկ մարմինները: Այս հանդիպումը ամենաշատն է տպավորվել:

## ՄԻ ՔԻՉ ԷՄՈՑԻԱ

Այսպիսի մասշտաբի փլատակները մաքրելու համար տեխնիկան ակնհայտորեն չէր բավականացնում, թեկուզ և բերվել էր ամբողջ Սովետմիությունից: Փլվածքների մեջ աշխատել կարողացող մասնագետների սուր պակաս կար: Մեզ այն ժամանակ ապշեցրել էին, օրինակ, անհրաժեշտ գործիքներով զինված ճապոնացիները: Չէ՞ որ երբեմն բավական էր ամբարձիչով սալաքարը ընդամենը մի քանի սանտիմետր բարձրացնել՝ հանելու համար տուժածին: Իսկ արմատուրան մետաղալարի պես կտրող հիդրավլիկ մկրա՞տը, կլոր սղո՞ցը, որով կարելի էր կտրել բետոնի մասերը: Ավելացրեք սրան մարդկանց փնտրելուն վարժեցրած շներին ու փլատակի տակ թաղված, բայց կենդանի մարդուն «զգալու» ունակ էլեկտրոնիկան: Էլ չեմ խոսում հաշված ժամերի ընթացքում հիվանդներ ընդունելու պատրաստ փչովի հոսպիտալների մասին: Այդ ժամանակ մենք նման ոչ մի բան չունեինք:

Արտասահմանցիք շատ բան սովորեցրին, և պետք է նրանց

Չ4

երախտապարտ լինենք, բայց մեկ է՝ ավերակների մաքրման ու վերականգնման գլխավոր ծանրությունը իրենց վրա վերցրին մյուսները: Ամենասովորական մարդիկ. փլատակները մաքրող շինարարները, զինվորականներն ու փրկարարները, բժիշկները, որ հոգնածությունից ուղղակի տապալվում էին խեղանդամ դարձած, ճզմված հազարավոր մարդկանց կողքին: Արժե նաև հիշել այն բազմաթիվ պաշտոնատար անձանց, որոնք համակարգում էին օգնության ամբողջ աշխատանքը:

## ՈՂԲԵՐԳՈՒԹՅԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ

Ինչո՞ւ այսքան զոհ եղավ: Չէ՞ որ մեկ տարի անց բնակչության խտությամբ չզիջող Կալիֆոռնիայում նույն ուժգնության երկրաշարժը խլեց ընդամե՛նը 65 մարդու կյանք, վիրավորների թիվը կազմեց շուրջ 3 հազար մարդ, իսկ տնից զրկվեց «ընդամենը» 14 հազարը: Նման օրինակներ շատ կարելի է բերել, եթե խոսքը վերաբերում է զարգացած երկրների տարածքում պատուհասած աղետին:

Միանգամայն կոնկրետ պատասխան է տրված ԽՄԿԿ ԿԿ Քաղբյուրոյի առաջադրանքով աշխատող մասնագետների խմբի հաշվետվության մեջ: Այս հաշվետվությունը ոչ այն ժամանակ, ոչ էլ ավելի ուշ անհրաժեշտ հրապարակայնություն չստացավ: Լրագրային կարճ շարադրանքը հետևյալ տեսքն ուներ. «Երկրաշարժի աղետալի հետևանքների հիմնական պատճառը ոչ միայն ցնցումների առանձնահատկություննն է, որքան նախագծման նորմերից անթույլատրելի շեղումներն են, հենց նախագծերի աղաղակող թերությունները և շինարարության բացառիկ ցածր որակը»: Այսինքն՝ տասնամյակներ շարունակ շինարարության մեջ տիրող զանգվածային ամենաթողությունը:

Նողկալի պահեց իրեն նաև ԽՍՀՄ քաղպաշտպանության համակարգը: Չապա հիշեք. չէ՞ որ մենք պատրաստվում էինք զանգվածային ավերումներով միջուկային պատերազմի: Սպիտակը ցույց տվեց, որ արդյունավետ ՔՊ գոյություն ուներ լոկ այս ոլորտը ղեկավարած պաշտոնաթող գեներալների՝ իրականությունից հեռու հաշվետվություններում: Բայց չէ՞ որ այդ գեներալները ամենայն մանրամասնությամբ պետք է մշակեին փլատակների տակից մարդկանց փրկելու տեխնոլոգիան:

Ինչի՞ մասին է խոսքը: Երբ շենքը փլվում է, բեկորների մի մասը ցրիվ է գալիս նրա պարագծով դեպի ներս, մի մասն էլ թափվում է պատերի կողքով՝ առաջացնելով պատերի մոտ կուտակներ: Այստեղ ողջ մնացածներ չեն կարող լինել, նրանք արդեն ջախջախվել են բեկորների տակ: Փրկել կարելի է նրանց, ովքեր գտնվում են շենքի կենտրոնում, առաջին հարկերում: Բայց պետք է հասցնել հասնել նրանց մոտ: Եթե երկրաշարժից հետո մեկ օրվա ընթացքում ոչինչ չի ձեռնարկվում, տուժածների 90 տոկոսը մահանում է տևական ժամանակ ճզմված մնալու պատճառով. եթե մեկ ամբողջ օր ծանրությունը ընկնում է վերջույթների վրա, օրգանիզմում մահացու ելքի հանգեցնող անշրջելի փոփոխություններ են տեղի ունենում:

Ամենաարդյունավետ միջոցը հետևյալն է. հզոր բուլդոզերներով արագ պատերի մոտից հեռացնել պոկվածքները՝ ազատելով դռների ու պատուհանների որմնախորշերը, և ներս թողնել լեռնային փրկարարներին ու հանքափորներին: Ճիշտ է, սա դաժան



է մահացածների հանդեպ, բայց այս եղանակը թույլ է տալիս հանել ողջերին:

Ուրեմն այսպես, Չայաստանում բարձր պաշտոնյաների պարտադիր խորհրդակցություններից ինչ-որ մեկի ժամանակ ոմն ինժեներ փորձում էր Ռիժկովին հասկացնել, որ անհրաժեշտ է հենց բուլդոզերներ գործի դնել: Անօգուտ: Չինովնիկները տարված էին միմյանց «անհապաղ օգնություն կազմակերպելու» ու «բոլոր ուժերը լարելու» կոչեր անելով: «Ակնոցավոր գիտունիկի» խոսքերին ուշք չդարձրին: Ահա և մարդիկ կռվում էին ամեն մի ամբարձիչ կռունկի համար, որոնք չափազանց քիչ էին առաջին օրերին: Իսկ եղածներն էլ փլատակների միջով պարզապես չէին կարողանում տեղ հասնել:

Ցավոք, ներկայիս իշխանավորների պահվածքը ավելի ու ավելի հաճախ տեղի ունեցող տեխնածին աղետների ժամանակ ցույց է տալիս, որ այդպես էլ ոչինչ չենք սովորում...

Անդրեյ ՄԱԶՈՒՐ

# Ամբողջ ճշմարտությունը երկրաշարժի մասին

**Կիրակնօրյա նոթեր**

1988-ի դեկտեմբերի 7-ին ամենուրեք խառնաշփոթ էր, տագնապ, շոկ՝ թե՛ փլատակների շուրջը, թե՛ մնացյալ Հայաստանում, որտեղից շտապում էին աղետյալներին փրկելու: Մի փոքր ուշքի գալուց հետո՝ հաջորդ օրվանից, ոչ ոք չէր հավատում, որ աղետը տարերային է եղել: Բանը մոտիվն էր. չէր կարելի պատկերացնել Կրեմլի համար ավելի ձեռնտու բան, քան ապստամբ Հայաստանի մեկ երրորդի ավերումն ու տասնյակ հազարավոր մարդկանց մահը: Երկրաշարժը երևի թե միակ բանն էր, որ կարող էր սանձել «կենտրոնի» վերահսկողությունից ամբողջովին դուրս էր եկած Հայաստանը:

«Ղարաբաղ» կոմիտեի ղեկավարությամբ անցկացվող գործադուլները, «մի-ա-ցում» վանկարկումով հարյուր հազարանոց հանրահավաքները կաթվածահար էին արել կոմունիստական իշխանությունը: 1988-ի նոյեմբերին Կրեմլը պարետային ժամ էր հայտարարել Հայաստանում, որի միջոցով ժամանակավորապես կասեցրել էր բողոքի՝ գործողությունները, բայց սպասվում էր հերթական ընդվզումը՝ հակառակ փողոցներում կանգնած սովետական զորքին: Երկրաշարժից մի քանի օր անց Մոսկվան առանց վարանելու կալանավորեց «Ղարաբաղ» կոմիտեի բոլոր տասն անդամներին:

Ժամանակի մեդիան խստագույն գրաքննության տակ էր, ու Երկրաշարժի արհեստական բնույթի մասին կասկածները հրապարակային արտահայտելու հնարավորություն չկար: Աղետից 20 տարի անց... Հայաստանի կոմկուսի Սպիտակի շրջկոմի առաջին քարտուղար Նորիկ Մուրադյանը պնդում է, որ Հայաստանում ատոմային ռումբի ստորգետնյա պայթեցում կամ «տեկտոնային»

# ՔԵԶ ՀԱՄԱՐ, ՀԱՅԱՍՏԱՆ. Շառլ Ազնավուր

Սպիտակի ավերիչ երկրաշարժից անմիջապես հետո Շառլ Ազնավուրը գրեց «Քեզ համար, Հայաստան երգը» (երաժշտությունը Ժորժ Գարվարենցի): Երգն առաջին անգամ կատարվել է 1988 թվականի դեկտեմբերի 20-ին Ֆրանսիայի 88 նշանավոր երգիչների մասնակցությամբ: 1989 թ-ին երգի երաժշտության համար Ժ. Գարվարենցն արժանացել է «Ոսկե սուր» մրցանակի: Երևանի «Մոսկվա» կինոթատրոնի առջևի հրապարակը կոչվել է Շառլ Ազնավուրի անունով: Գյումրիում կանգնեցվել է ֆրանսահայ մեծանուն երգչի արձանը: Երևանաբնակ քանդակագործ Կառլեն Միրզոյանը պատրաստել է 88 ինքնատիպ և հայաշունչ սափորներ «Քեզ համար, Հայաստան» երգն առաջին անգամ կատարած երգիչներին նվիրելու համար:

Երգի տեսահոլովակը նկարել է Անրի Վերնոյը:



## ՔԵԶ ՀԱՄԱՐ, ՀԱՅԱՍՏԱՆ

Քո գարունները կբացվեն նորից,
Քո լավ օրերը ետ կգան նորից,
Ձմռանից հետո, դժոխքից հետո,
Կվերընձյուղվի կենաց ծառը քո -
Քեզ համար, Հայաստան:

Գալիք օրերդ նորից կերգեն,
Զավակներդ ամուր տուն կկառուցեն,
Սարսափից հետո ու վախից հետո,
Աստված կբուժի լլկված հողը քո -
Քեզ համար, Հայաստան:

Ամբողջ աշխարհը ոտքի է ելել,
Ամբողջ աշխարհը քեզ հետ է հիմա,
Եվ քեզ համար է, մոռացված իմ ազգ,
Արար աշխարհը իր սիրտը բացել,
Ու քեզ է մեկնել ձեռքերը ահա:

Եթե քո բախտն ես անգամ անիծում,
Քո աչքերի մեջ, Հայաստան երկիր,
Հույսի մի շող եմ ես ուզում տեսնել,
Ուզում եմ տեսնել ցանկություն, ձգտում,
Ճակատագիրդ ձեռքդ առնելու,
Ճակատագիրդ ամուր պահելու:

**Шарль АЗНАВУР**

**Для тебя, Армения!**

Твои весны к тебе возвратиться ещё,
Твои светлые дни возродятся ещё.
После ада зимы и невзгод
Древо жизни ещё зацветёт
Для тебя, Армения.
Будут петь над тобою года и года,
И восстанут из праха твои города.
После ужаса, страха, тревог
Эти раны жестокие Бог
Исцелит, Армения.
Мой скорбящий народ – ты весь мир всколыхнул,
Мир с тобою, он душу тебя распахнул
И простёр к тебе руки.
Ты судьбу проклянёшь, но в глазах у тебя
Пусть останется место, как прежде,
И желание жить, муки перетерпя,
И надежде, надежде...

*перевод Георгия Кубатьяна.*

---

Ը4

զենք է կիրառվել: Նրա կարծիքով, «բոլորովին պատահական չէ, որ ողբերգության նախօրեին Հայաստանում հայտնվեց Բ. Ե. Շչերբինան, որը Սովետական Միությունում ատոմային զենքի փորձարկման վայրերում ռազմական շինարարության և գիտատեխնիկական սարքավորումների հարցերով պատասխանատուն էր: Նրա հետևից թռավ-եկավ Դ. Տ. Յազովը՝ ԽՍՀՄ պաշտպանության նախարարը զլխավոր ռազմակայանի մի խումբ սպաների հետ, իսկ Հյուսիսային Հայաստանից շտապ կարգով վերատեղաբաշխվեցին հրասայլային միավորումներն ու բոլոր շարժական հրթիռային կայանքները» («Սպիտակի հուշահամալիր: 1988 –2008», Մոսկվա, «Դոսսոմ» հրատարակչություն, 2008, էջ 68):

Ն. Մուրադյանն արտառոց է համարում նաև ԽՍՀՄ արտգործնախարար Էդուարդ Շևարդնաձեի խոսքերը՝ արտասանված ՄԱԿ-ի նստաշրջանում, Նյու-Յորքում. «Մենք չէինք սպասում, որ հետևանքները կլինեին այդքան աղետալի»:

Հայ երկրաշարժաբանները մասնագիտական գրականության մեջ հերքել են «պայթյունի» տեսությունը: Ըստ նրանց, սարքերը գրանցած կլինեին երկրաշարժին նախորդած ցնցումը:

1988-ից 23 տարի անց «Արգումենտի ի ֆակտի» թերթում լույս տեսավ մի հարցազրույց, որտեղ ուկրաինական ակադեմիկոս Օլեգ Ֆեյգինը պնդում է, որ Սպիտակում կիրառվել է լիտոսֆերային զենք: Նրա տեսակետը հաստատել է ռազմական փորձագետը: Սա մի զենք է, որը կարելի է կիրառել հազարավոր կիլոմետրերի հեռավորությունից սարքերը ոչ մի ցնցում չեն գրանցի:

Միգուցե այսօր էլ մասնագետների համար երկրաշարժի արհեստածին բնույթի վարկածը «դավադրության տեսության» ծիծաղելի դրսևորում թվա: Բայց միայն զենքի օգնությամբ չէ, որ սովետական իշխանությունը սպանել էր Երկրաշարժի 25 հազար զոհերին ու տասնյակ հազարավորների հաշմանդամ դարձրել:

Նախ, երկրաշարժից մի քանի տարի առաջ իջեցվել է Հայաստանի սեյսմակայունության աստիճանը, երկրորդը՝ կան հարյուրավոր վկայություններ շինարարության խայտառակ որակի մասին:

Երկրաշարժի առաջին իսկ օրերից աղետի գոտում ծառայած գնդապետ Ռ. Ի. Մեղինսկին վկայում է, որ իր աչքերով տեսել է «երկաթբետոնե սալի վրա գործարանային որակի վերահսկողության բաժնի «խոտան» կնիքը» («Սպիտակի հուշահամալիր...», էջ 58):

Ակադեմիկոս Գրիգոր Ավագյանը բերում է ավելի ահավոր փաստ. «... Դեռևս 1986 թ. ԽՍՀՄ ԳԱ սեյսմոլոգիայի և սեյսմադիմացկուն շինարարության միջգերատեսչական խորհուրդը տեղյակ է պահել Լենինական-Սպիտակ-Կիրովական հատվածում ութ բալանոց երկրաշարժի հավանականության մասին: Ավելին, առաջարկվել են մի շարք պաշտպանական միջոցառումներ, այն է՝ սահմանափակել շինարարությունը նշված տարածքներում, ամրապնդել թույլ շինությունները, դեմոնտաժել վթարային շենքերը»... («Յավը սրտներումս, հայացքներս՝ վաղվա օրվան», «Գրական թերթ», 1989, փետրվարի 3):

Այս տարվա հոկտեմբերին ես «Երկրաշարժ, որ ցնցեց մեզ» ցուցահանդեսով շրջեցի Հայաստանի չորս մարզերում: Ինձ մոտենում էին մարդիկ ու պատմում Երկրաշարժից առաջ տեսած լուսազդանշանային կրակոցների, ուրիշ տարօրինակ երևույթների մասին, իսկ այցելուների ճնշող մեծամասնությունը համոզված էր, որ երկրաշարժն արհեստածին է...

*Վահրամ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

**www.lragir.am/index/arm/0/comments/view/92114**

# Մեծ երգահան Կոմիտասը



**1869 թ.,Կուտինա (Քյոթահիա), Թուրքիա – 1935 թ., Փարիզ** (թաղված է Երևանի Կոմիտասի անվան զբոսայգու պանթեոնում) Կոմպոզիտոր, երաժշտագետ, երաժիշտ-բանահավաք, երգիչ, խմբավար, մանկավարժ Կոմիտասը հայ ազգային կոմպոզիտորական դպրոցի հիմնադիրն է:

Նրա ստեղծագործությունը նկատելի ազդեցություն է ունեցել նաև արևելյան այլ ժողովուրդների երաժշտության զարգացման վրա:

Կոմիտասը (իսկական անուն-ազգանունը՝ Սողոմոն Սողոմոնյան) 12 տարեկանում ընդունվել է Էջմիածնի Գևորգյան ճեմարան, որտեղ հատուկ ուշադրություն են դարձրել նրան՝ գեղեցիկ ձայնի և երաժշտական բացառիկ ընդունակությունների համար: Ուսման տարիներին յուրացրել է հայ նոտագրությունն ու հոգևոր երաժշտությունը, հավաքել ժողովրդական երգեր և ստեղծագործական փորձեր արել: 1893 թ-ին ավարտել է ճեմարանը, նշանակվել երաժշտության ուսուցիչ, Մայր տաճարում՝ խմբավար: 1894 թ-ին ձեռնադրվել է կուսակրոն աբեղա՝ VII դարի բանաստեղծ ու երաժիշտ, կաթողիկոս Կոմիտասի անվամբ, 1895 թ-ին՝ վարդապետ: 1895 թ-ին Թիֆլիսում հարմոնիայի դասեր է առել Մակար Եկմալյանից: 1896–99 թթ-ին ուսումը շարունակել է Բեռլինում՝ Ռ. Շմիդտի մասնավոր կոնսերվատորիայում և Արքունական համալսարանում. ուսումնասիրել է կոմպոզիցիայի տեսություն, հոգեբանություն, փիլիսոփայություն, խմբավարություն, մշակել է ձայնը, սովորել դաշնամուր ու երգեհոն նվագել: Այդ տարիներին գրել է երգեր, ռոմանսներ, խմբերգեր, մշակել ժողովրդական երգեր:

Անգնահատելի է Կոմիտասի հավաքչական ու գիտական աշխատանքը: Նա ժողովրդական երգերը գրառել է ազգագրագետի վարպետությամբ, գեղագետի պահանջկոտությամբ և գիտնականի վերլուծական դիտողականությամբ: Երաժշտական բանահյուսության մի շարք հնագույն և բարձրարվեստ նմուշների հայտնաբերումը (հեթանոս հավատալիքներին առնչվող հորովելների եղանակները, «Սասունցի Դավիթ», «Մոկաց Միրզա» վիպական ասերգերը, անտունիներն ու հոգևոր տաղերը) համարվում է պատմամշակութային խոշոր հայտնագործություն, իսկ հավաքած ավելի քան 4000 գեղջկական երգերը՝ հայ ժողովրդական երգարվեստի անթոլոգիա:

Կոմիտասը տեսական աշխատություններում բացահայտել է ժողովրդական երաժշտության կենսական հիմքերը, բնութագրել հայ երգի գեղագիտական արժանիքները, վերլուծել տեսակներն ու կառուցվածքային հատկանիշները: Նա հիմնականում գրել է մեներգային և խմբերգային երգեր, որոնք սերում են ժողովրդական կամ հոգևոր սկզբնաղբյուրից. «Առ գետս Բաբելացվոց» սաղմոսը, «Ո՞ւր ես գալի, ա յ զարուն» կանտատը (Հովհաննես Հովհաննիսյանի խոսքերով), «Մութն էր երկինքը» ռոմանսը (Հովհաննես Թումանյանի խոսքերով), «Կաքավի երգը», «Գարուն ա», «Քելեր, ցոլեր», «Լոռու գութաներգ», «Անտունի», «Ծիրանի ծառ» երգերը, նաև հարսանեկան, վիճակի, պարերգային և այլ շարքեր:

Կոմիտասին է նվիրված Պարույր Սևակի «Անլռելի զանգակատուն» պոեմը, որը պատկերազարդել է գեղանկարիչ Գրիգոր Խանջյանը:

Կոմիտասի անունով են կոչվել Հայաստանի պետական լարային քառյակը, Երևանի կոնսերվատորիան, Կամերային երաժշտության տունը, պողոտա, զբոսայգի, Ստեփանակերտի երաժշտական դպրոցը, երգչախմբեր արտերկրում, արձաններ են կանգնեցվել Երևանում, Վաղարշապատում, Փարիզում և այլուր:

## ԿՈՄԻՏԱՍ

### ԱՍՏՎԱ՛Ծ ԻՄ

Սիրո սերմը զատեցիր,
Հրո ջերմը պատեցիր.
Հողին շունչդ փչելով՝
Հոգի կյանքդ կաթեցիր:
Եվ Արևդ լուսին մարմնեւս մաղեցավ,
Եվ իմ հոգին Հոգուդ ցողով շաղեցավ,
Իմ սրտիկի սերն ու բոցը, սիրո խոցը
Ամպերի մեջ, որպես կայծակ սահեցավ

### ԿՅԱՆՔ

Շառա՜չ, շառա՜չ...
Սարեն հեղե՛ղ փրթավ,
Վազո՛ւմ է առաջ ու չեշտակի.
Հողեն ծառեր ծամելով,
Հողեն քարեր քամելով,
Գետը լցավ ու գալարեց,
Սիրտը խցավ ու պալարեց.
Ցելա՛վ, ցելա՛վ...
Ամպեն արե՛վն ելավ,
Նազում է կանաչ ու հեշտակի.
Սարի խոցին ժպտելով,
Ծառի ծոցին ծպտելով,
Պաղպաղ գետին ջե՛ր բերելու,
Խավար սրտին սե՛ր մերելու:

### ՃԱՆԱՊԱՐՀ

Բարակ ուղին սողալով,
Ոտի տակին դողալով,
Ճամփի ծայրին բուսել է
Կյանքի ծառը շողալով:
Ի՛նչ լայն սիրտ է, որ ունի
Այս ճանապարհն Անհունի...
Մարդու, բույսի, գազանի
Եվ թևավոր թռչունի:

### ՈՍԿԻՎՆՄԵՂԱՑ

Ա՜յ, վա՛ռ աչեր.
Այն ի՛նչ ամպ էր
Սարի գագաթին,
Ճերմակ-ճակատին՝
Արծաթ աչեր տալով՝
Ցիր արավ:
Ճերմակ-ճակատին՝
Սարի փափագին,
Դարի պապակին
Շար մարգարիտ տեղաց,
Շար մարգարիտ տեղաց,
Լար մարգերդ բիլ արավ,
Ուսուն-հրով վառ մարգերդ ծիլ արավ.
Ջառ մարգերդ ոսկի-մեղաց.
Ոսկի-մեղաց լուսուն-ջրով
Մկրտեցին քու մաճերդ:

### ԵՐԿՆԻ ԿԱՅԾԵՐ

Երկնի կայծեր բյուրափառ՝
Հրո հովեն ցիրուցան,
Գիշեր-երկիր հյուրաբար՝
Լուսո ծովեն կաթեցան
Աչքին սոսուն,
Մտքին խոսուն:

### ԱՇՈՒՆ ՕՐ

Սևուկ ամպեր վար եկան
Օրան, օրան,
Սարի վրա շար եկան:

Ծագեց առավոտ
Պաղեց, սառավ օդ:
Գոռաց երկինք, բուք արավ,
Հնաց, հնաց.
Ծերուկ երկիր սուգ արավ:
Ճաքեց հեռուն ամպ,
Երկիր դողաց-բա՛մբ:
Բողբոջ արև շող կապեց,
Դողաց, սողաց,
Արյուն-ամպից քող կապեց:
Վառեց լեռան լանջ,
Լեռան ցավատանջ:
Տեղաց անձրև մաղ տալով,
Մարմանդ-մարմանդ,
Հոգնած տերև շաղ տալով:

## ԴԻՏԱԿ

Դու ինչե՛ր ես տեսնում, ինչե՛ր, ո՛վ դիտակ,
Որ մեր աչքին՝ աներևույթ, անգիտակ.
Երկնի օրը քեզանով ենք կատարում,
Երկրի խորը քեզանով ենք պատառում:
Դարձի՛ր, դարձի՛ր,
ո՛վ իմ դիտակ լուսածին՝
Կյանքի, ջանքի, հույս հնար ճարելով,
Զարթի՛ր, զարթի՛ր,
ո՛վ իմ գիտակ հուսածին՝
Մտքի, հոգու սիրո քնար լարելով:
Ելավ շինական՝ ցանեց առավ
Բուռը լի ցորեն.
Անցավ դաշտեն ու ձորեն,
Բարձավ տասը լիր ցորեն:
Ելավ տերև՝ երև-երե կանաչ ծովանի,
Տարփուն-տարփուն կապույտ հովանի.
Ժպիտ քողով սրտիկ հովին ծռած,
Ծպիտ դողով սրիկ քովին դրած:
Երկիրը եռում է՝ կողիկը գցելով՝
ծաղիկ-ծաղիկ,
Առվակը սիրում է՝ հովիկը խոցելով
մաղիկ-մաղիկ.
Վարդիկը ջեռում է շողիկը բոցերով՝
լռիկ-լռիկ,
Հովիկը ծիրում է՝ լողիկը ծոցերով՝
ջրիկ-ջրիկ:

## ԻՄ ԵՐԱԶՈՒՄ

Եվ ա՛յս գիշեր, իմ երազում,
քեզ հետ մետկեղ պարեցինք,
Սեր-ոգիներ սուրբ սեղանում
մեղրամոմեր շարեցին:
Ոսկի-արծաթ ամպի ծալեն
նուրբ ու բարակ քող ճարեցինք,
Ինձի-քեզի կարմիր-կանաչ
սիրո շապիկ կարեցին:

## ՅՈՎ–ՍԵՐ

Նուրբ հովի պես լարերով՝
Սուրբ ծովի պես պարելով,
Սերըդ սրտում պահեցիր,
Սրտիս խորքում գահեցիր:
Աշունն եկավ ծառին, սարին հևելով՝
Անձրև թելեր փոշի-փոշի թևելով.
Պտուկը ճոխ՝ առին տարին
Տերևները կանաչ-ճանաչ պեղելով:

## ԾԱՂԻՆ ՈՒ ՇԱՂԻ

Երկիր քուն դրավ,
Եվ թռչուն թռավ:
Հուզված առուն փախ տվավ
Սողուն-սողուն,
Ձորում մշուշ կախ տվավ:
Քամին ելավ վեր,
Արավ տարուբեր:
Մոխիր ամպեր ժիր եկան
Դալուկ-դալուկ,
Սարի վրա ցիր եկան:
Հալեց աշուն օր
Կյանքիս սևավոր:

## ԿԱՐՄԻՐ ԲՈՑ

Կանաչ դաշտի կուրծքը պայթեցավ,
Գոգին հսկա ժայռը ճայթեցավ.
Ճայթեցավ ու ծառացավ,
Ծառացավ ու տեղում քարացավ:
Կապույտ երկնի ծոցը ծ՛ովացավ,
Կարմիր երկրի բոցը հովացավ.
Ծովացավ ու ծավալեց,
Ծավալեց ու հողմով թավալեց.
Բոց-մոց՝ կարմիր երկիր հովանալով,
Ծոց-ծոց կապույտ երկիր ծովանալով՝
Ծովանալով ու դողով ծավալելով,
Ծավալելով ու չորս կողմ թավալելով՝
Հողմը ծառացավ, ու բոցը հանգավ...

## ՊԱՏՐԱՆՔ

Սալահատակն ու ուղինՀոգիս թիթեռ
Մի վայր, մի վեր
Հույս ծովերով թևելով՝
Հոգիս մի բեռ
Անմայր, անսեր,
Լույս հովերով հևելով...:

## ՍԱՐ ՈՒ ՔԱՐ

Սալահատակ-սալահատակ քալեցի,
Սալի վրա կյանք ու ջանքս հալեցի.
Ոսկի, արծաթ սալի սրտում սարերով,
Ծառ ու ծաղիկ սալի շրջում բարերով:
Սալը հեցած և ո՛չ մի բան չիմացավ,
Վրան հիմար կյանքի ուղին վիմացավ:
Ե՛վ ահավոր, և՛ կանաչ.
Ահա՛ սարը՝ ձորը բացել՝
Ահա՛ քարը՝ օրը գացել՝
Ե՛վ մահավոր, և՛ անաչ:

## ՍԵՐ ՈՒ ԲԵՐ

Գարուն սերն էր՝
Դալար-օրերում շոգիացավ սրտիս վրա՝
Ամպեր-ամպեր ծալ ու քաշ:
Կյանքի եռն էր՝
Ամառ-ձորերում ոգեցավ կրծիս վրա՝
Լուսին-լուսին հալ ու մաշ:
Աշուն-բերն էր՝
Պտղիկն էր հոգում ծառերով՝
Սրտիս բակին նուշիկ-նուշիկ բարդելով:
Այն ձմեռն էր՝
Ձյունիկն իր գոգում սարերով՝
Կրծիս տակին ուշիկ-ուշիկ զարթելով:

## ՍԵՐ ՈՒ ՋՈՒՐ

Արևն այտեն
Ծիրան ցայտով,
Լուսիկ-լուսիկ ճրագեց,
Կագավ ոտեն
Վարդի հոտով,
Հուսիկ-հուսիկ կրակեց:
Ծառի քովեն
Սարի հովով,
«Զի՞ս կսիրե՞ս» շրշնջեց.
Հոգուս խորեն,
Սիրու ձորով,
Զիս կսիրե՞ս, մրմնջեց.
Աչքի տակեն
Սրտիս ակով
Ծաղիկ-ծաղիկ ծիծաղեց,
Գոգի մարգեն
Բարակ զարկով
Գաղիկ-գաղիկ շաղ մաղեց:
Աղբեր քուրեն
Սառն աղբյուրով
Տորոն-տորոն սեր փնջեց:
Հուր աչերեն
Լուռ պաչերով
Որոն-որոն ներշնչեց:

## ՍԵՐ–ՅՈՎԻԿ

Շնչե՛, հովիկ,
Դու թոթովիկ՝
Կյանքի սերը՝
Սրտի բերը՝
Պարուրելով,
Ծարուրելով՝
Ծովի ալքեն,
Ամպի ծալքեն,
Ալ ծաղկունաց
Հրո հալքեն,
Թող նա վառե՛ իմ ծոցիկին ոսկի լույս,
Հողմահարե՛ դու բոցիկին, որ իմ հույս՝
Լանջիս վրա
Հավետ եռա՛:

## ՎԱՐԴԻԿԻՍ

Խցիկիս մոտ ջուր եմ արել մարգ ու մարգ,
Վարդիկիս հոտ հուր էր դառել
բարկ ու բարկ.
Ելա անհոգ սարերի գոգ շրջելու,
Սիրու ամպեր բոլորեցին թրջելու:
Մահիճիս քով հուր եմ վառել դողունի,
Վարդիկիս հով դուռ էր ճարել գողունի.
Լանջես ի վեր սիրո շիթեր շաղելով՝
Երազ-հույսեր նվագեցին խաղալով:
Գիշեր գացավ՝ լուսին-լուսին հուսալի
Նոր օր բացավ՝ արևն լուսալի:
Մենավոր խցիկեն՝
Հուսո սարակ շավիղով
Աշխարհ մտա,
Վարդի բույրի գծիկեն՝
Հովի բարակ տավիղով՝
Քեզի գտա:

## Դալի-Բաբայի ճառը

Ո՛վ հայրեր, ո՛վ պապեր, այս գավաթը խմում եմ, բայց առանց նվիրելու ձեր ոսկորներին: Եթե դուք այս վանքերի տեղը, որոնցով լիքն է մեր երկիրը, բերդեր շինեիք, եթե դուք սուրբ խաչերի և անոթների փոխարեն, որ սպառեցին ձեր հարստությունը, զենքեր գնեիք, եթե դուք այն անուշահոտությանց տեղ, որ խնկվում են մեր տաճարներում, վառոդ ծխեիք, այժմ մեր երկիրը բախտավոր կլիներ: Մեր երկիրը չէին քանդի, մեր որդիքը չէին կոտորվի և մեր կանանց չէին հափշտակի… Վանքերից ծագեց մեր երկրի կործանումը, նրանք խլեցին մեր սիրտը և քաջությունը, նրանք ձգեցին մեզ ստրկության մեջ, սկսած այն օրից, երբ Տրդատը թողեց իր սուրը և թագը, վերցրեց խաչը և մտավ Մանյա այրը՝ ճգնելու… Ո՛վ Հայոց հին աստվածներ, ո՛վ Անահիտ, ո՛վ Վահագն, ո՛վ Հայկ, նվիրում եմ այս բաժակը Ձեր սուրբ հիշատակին, դուք փրկեցեք մեզ…

*Րաֆֆի*

# Խոստովանում եմ...




Կարեն Մղդսյանի բանաստեղծություններին ծանոթ եմ դեռևս 2005 թվականից, երբ միասին տպագրվում էինք «Նոր-Դար» թերթում: Եվ անսահման ուրախ եմ, որ սույն թ. հոկտեմբերի 17-ին Ռուսաստանի Հայերի Միության Մոսկվայի Քաղաքային Կազմակերպության (ՄՔԿ) դահլիճում ջերմ և ուրախ մթնոլորտում կայացավ նրա «Խոստովանում եմ» բանաստեղծությունների հայերեն լեզվով անդրանիկ գրքի շնորհանդեսը: Դահլիճում գտնվող բանաստեղծի ընտանիքը՝ Սոնան և երկու տղաները՝ Էդմոնդն ու Հենրիխը, ընկերներն ու մտերիմները, մոսկվահայ գրողները, Մոսկվայի Քաղաքային Կազմակերպության աշխատակիցներն ու ակտիվիստները, ինչպես նաև այլ գրականասերներ Կոմիտասի սուրբ ու հարազատ ելևէջների ներքո հաճույքով և մեծ ուշադրությամբ ունկնդրեցին ՄՔԿ Գործադիր Կոմիտեի նախագահի տեղակալ, երեկոյի կազմակերպիչ Գագիկ Գաբրիելյանի, բանաստեղծուհի, «Կանթեղ» գրական սրահի ղեկավար Անահիտ Նիկոյանի, «Դեբեդ» գրական ընկերության հիմնադիր, ղեկավար Ռուսլան Միսկարյանի, մոսկվահայ բանաստեղծներ Ամալյա Իսայանի, Լեոնիկ Բարսեղյանի և ուրիշների հիացական ելույթներն ու հեղինակի սրտից բխած անկեղծ, Լոռվա պես չքնաղ ու հրաշալի բանաստեղծական տողերը, որոնք հնչեցին Անուշիկ Սիմոնյանի, Էլյանորա Մակարյանի, Ռոզա Հայրապետյանի կողմից: Իսկ Տաթևիկ Կիրակոսյանն ամենայն անկեղծությամբ ընդգծեց հատկապես հեղինակի «Մենախոսություն» բաժնի կարևորությունը.

Միթե քեզանից շատ եմ պահանջում,
Ոչ անմահություն, ոչ փառք եմ ուզում,
Տեր իմ երկնավոր լույս, լույս եմ մուրում,
Ամպահույս ճամբիս հույսս է մարում:



Կարեն Մղդսյան բանաստեղծն իր համեստ ու հակիրճ ելույթում նշեց, որ իր հայալեզու ստեղծագործություններով փորձում է օգտակար լինել հայրենիքին, հայրենիքից հեռու գտնվող սփյուռքահայերին պահպանելու իրենց նվիրական, սուրբ լեզուն ու գրականությունը:

Կարեն Մղդսյանը ծնվել է 1968 թ. Հայաստանում՝ Լոռվա լեռների գրկին հպարտ բազմած Շնող գյուղում, որտեղ էլ անց է կացրել մանկությունը:

Առաջին բանաստեղծությունները տպագրվել են դեռ «Պիոներ կանչ», հետո «Նոր–դար», «Երկրամաս» թերթերում, «Խաչքար» և



«Գործարար» ամսագրերում:

Բանաստեղծի «Խոստովանում եմ» գիրքն իսկապես խոստովանություն է իր տարիների ապրած բոլոր զգացմունքների՝ սիրո և կարոտի, լոռվա բնաշխարհի, մայրության և նրա մեծարման, անհոգ մանկության հրաշալի հուշերի, հայրենիքի նվաճումների ու կորուստների, ինչպես նաև, իր գունազեղ երազների մասին...

Հեղինակն իր խորիմաստ մտքերն անկեղծ ու ջերմ, ինքնատիպ և գեղեցիկ արտահայտման ոճով էլ հենց գրավում է ընթերցողին:

Ու՞մ հաճելի չէ իրեն հավերժ անհոգ մանուկ զգալու ցանկություն արտահայտող տողերը.

Լիներ, այնպես լիներ, տուն դառնայի նորեն
Հրաշք լիներ, ու ես մանկանայի մեկեն,
Ու վազեի իմ մանկության արծաթ կածաններով,
Բարձրանայի մեր դաշտերը շնչող գարնան բույրով:
Ժողովեի մի փունջ գարնան ծաղիկներից,
Գարնան բույրով արբած՝ տուն դառնայի նորից,
Ու փարվեի մորս քնքուշ, կարոտ սրտին,
Գլուխն իմ դնեի հոգնած մորս գոգին:



ՑԷ

...
Լինե՜ր, հրաշք լիներ, մանկանայի նորից...
...
Կա՞մ ո՞ր հային հարազատ չէ Նաիրյան երկրի հրաշագեղ նկարագրությունը, նրա հանճարածին զավակների նկատմամբ ունեցած հպարտությունն ու մեսրոպատառ գրերի հայ օջախներում անխախտ սյուներ լինելու փաստը.
.........
Քո ծաղիկները քո հերոսների
Քարավաններն են,
Երկաթ գրերդ՝ մեր օջախների
Անխախտ սյուներն են...
Դու հին ես՝ այո, բայց ոչ հնացած,
Դու քարի երկիր, բայց ոչ քարացած,
Մեր արևատես, մեր արևահամ,
Մեր հանճարածին երկիր Նաիրյան:

Շուտով լույս կտեսնի Կարեն Մղդսյանի «Խոստովանում եմ» գրքի ռուսերեն լեզվով թարգմանությունը:
Թարգմանության հեղինակը շատ պատկառելի, մեր հարգարժան բանաստեղծ, թարգմանիչ, գրականագետ, նկարիչ, Ա. Ս. Պուշկինի անվան մեդալակիր Աշոտ Սահրադյանն է. «Ապրելով մի միջավայրում, որն ազգային մշակույթների յուրատեսակ խառնարան է, Մղդսյանը հակիրճ ձևաչափերով դրոշմում է մտքերի հաստատակամ ընթացքը: Եթե նա արձակագիր լիներ, ապա համարձակորեն կզբաղեցներ Հրանտ Մաթևոսյանի վախճանից հետո ազատված տեղը: Այն հողը, որի երգիչը չկա, դադարում է այլևս հայրենի լինել:
Սրանում է, կարծում եմ, Մղդսյանի պոեզիայի սկզբունքային տարբերությունն այն ամենից, ինչ վերջին քսան տարում ես կարդացել եմ հայերեն»:
Սա է Ա. Սահրադյանի բարձր գնահատականը, որը դահլիճում հնչեց Ելենա Թոսունյանի կողմից: Նա և Իրինա Զաքարյանը նույնպես եկել էին իրենց վառ տպավորություններն արտահայտելու վերոհիշյալ գրքի վերաբերյալ: Եկեք ցանկանանք, որ «Կարենի երազած «Երկրի ու երկնի կապույտ դաշնությունը» ծմա մեր աշխարհի, հոգու և կյանքի տերը... իսկ նրա «բազմակերպ ու բազմալիք... բազմասեր ու բազմածալք» բոլոր ապրումները դառնան բանաստեղծություններ» ինչպես այս գրքի ներածական բաժնում գրել՝ է Բանասիրական գիտությունների թեկնածու, գրքի խմբագիր՝ Երազիկ Հարությունյանը:

*Ամալյա ԻՍԱՅԱՆ,*
*Հայաստանի Ժուռնալիստների Միության անդամ*

## 2014-ը կապույտ փայտե Ձիու տարի է

2014-ի խորհրդանիշը կապույտ փայտե Ձին է:
Ձին եռանդուն է, դիմացկուն և անհամբեր: Ձին սիրում է աշխատանքը և հարգում ազատությունը: Նրան խորթ է որոշ-գայթներ լարելը և թիկունքից հարվածելը, ուստի հազիվ թե նրան հմայի անկեղծության ու արդարության բացակայությունը: Ճիշտ է, Ձիուն կարելի է խաբել, բայց երբ նա զգա, իսկ ձիերը զգայուն են, կպատժի անպայման: Ակնհայտորեն 2014-ը ձանձրալի չի լինի, այլ արագընթաց ու եռանդուն, բարեհամբույր ու նրբազգաց:

**Ձիու տարում պայտեր գնեք**
Որպեսզի Ձին ձեզ օգնի, տարեմուտին տունը պետք է զարդարել կապույտ, երկնագույն, կանաչ գույներով, հավելելով բնական ցանկացած գույն՝ ավազի, խոտի, արևի: Տունը զարդարելիս ուշադիր եղեք մանրուքների նկատմամբ՝ Ձին գնահատում է ազնվազարմությունն ու պարզությունը, տանել չի կարողանում ավելորդությունները: Իբրև զարդարանք անպայման պետք է լինեն փայտե իրեր՝ սափորներ, սկահակներ, ձիու արձանիկներ: Մոդեռն ոճի իրերը հավաքեք: Տարվա գլխավոր թալիսմաններն են՝ պայտը, ծնծղան, ձին: Ձիու բարեհաճությանն արժանանալու համար անպայման մեկնումեկն ունեցեք ձեր տանը:

**Դիմավորեք տարեմուտը ցամաքում**
Ձին հավատարիմ, տիրոջը նվիրված կենդանի է, այդ պատճառով տարեմուտը ավելի լավ է դիմավորել ընտանիքի և ամենամտերիմ մարդկանց հետ: Ձին նաև խաղացկուն է, ուստի սիրում է ուրախ հավաքույթները: Ընտանեկան միջավայրում Ձիու տարին դիմավորելուց հետո կարող եք շարունակել տոնը ընկերների հետ՝ եղևնու շուրջը, հրավառությունների ներքո: Հետևելով ազատատենչ Ձիուն, տարեմուտը կարելի է դիմավորել մոլորակի ցանկացած կետում: Ձին սիրում է ամուր կանգնել ոտքերի վրա, այդ պատճառով դիմավորեք տարեմուտը ցամաքում, խուսափեք ինքնաթիռներից ու նավերից:

**Միատեղեք բնության գեղեցկությունը և մարդկային ձեռքի ջերմությունը**
Ձին խելացի կենդանի է, այդ պատճառով տարեմուտի ընծաներն ընտրելիս նախապատվությունը տվեք ինտելեկտուալ տարբերակներին, որոնք նաև օրիգինալ են:՝ Ասենք՝ գրքեր, լավագույն նվեր են տարվա թալիսմանները՝ պայտի, ձիու, ծնծղաների տեսքով հուշանվերները, արձանիկները, բիժուտերիան,՝ կախազարդերը: Ձիու տարում լավ նվեր են օգտակար իրերը՝ ձիու պատկերով: Հաջողություն կբերեն փայտե նվերները՝ զարդատուփեր, փայտե զարդեր, սեղանի սպասք, սկահակներ: Այն բոլոր նվերները, որոնք միատեղում են բնության գեղեցկությունը և մարդկային ձեռքի ջերմությունը, հրաշալի կընդունվեն:

**Սեղանին կարող եք կումիս ունենալ**
Ձին պարզ կենդանի է, որ սիրում է որակ և լակոնիզմ: Տոնական սեղանը չարժե ծանրաբեռնել տարաշխարհիկ ուտեստներով: Ձիուն գրավում են ընտանեկան ջերմությունն ու հարմարավետությունը: Սեղանի սփռոցը, անձեռոցիկները պետք է լինեն բնական նյութերից՝ բամբակից, թելից կամ մետաքսից: Պարտադիր է սեղանին ունենալ փայտե սպասքից գոնե ինչ-որ մաս՝ գդալ, ափսե, գավաթ: Տարվա տիրուհու բարեհաճությունը շահելու համար իբրև խորհրդանիշ սեղանին ունեցեք մի գավաթ մաքուր ջուր, վարսակ և հացի կողեգր:
Ձին խոտակեր է, այդ պատճառով սեղանին պետք է շատ մրգեր լինեն ու բանջարեղենից, կանաչեղենից պատրաստված ճաշատեսակներ: Մսեղենը խասցրեք նվազագույնի, մսի փոխարեն օգտագործեք թռչնամիս՝ հավի, հնդկահավի, բադի: Ձիուն հաճոյանալու համար սեղանին կարող եք կումիս ունենալ:

**Լավագույն սանրվածքը ձիու պոչիկն է**
Նոր տարվա տիրուհուն հաճո են բնական կտորները և հանգիստ գույները: Սակայն Տարեմուտը տոն է և դուք կարող եք օգտագործել վառ հավելումներ: Քանի որ 2014-ը կապույտ Ձիու տարի է, նախընտրելի են կապույտ, երկնագույն, կանաչ գույների բոլոր նրբերանգները: Որևէ խիստ կանոն ու սահմանափակում չկա, քանի որ Ձին ազատատենչ կենդանի է: Կանանց տոնական հանդերձները կարող են լինել երկար կամ կարճ, կարևորը, որ հմայիչ լինեն: Լավագույն սանրվածքը, իհարկե, ձիու պոչիկն է, բայց կարելի է և գեղեցիկ հարդարել մազերը: Կապույտ փայտե Ձին պատրաստ է ձեզ երջանկություն պարգևելու:

# Հայրս ինձ սովորեցրել է, որ մշտապես պետք է ձգտել առավելագույնին. Ռուբեն Վարդանյան



**Ռուսական Коммерсантъ թերթին տված հարցազրույցում Ռուսաստանում հայտնի հայ գործարար, ֆինանսիստ Ռուբեն Վարդանյանը պատմել է իր անձնական կյանքի մասին:**

## Արմատների մասին

Վաղ մանկության տարիներս գրեթե չեմ հիշում. միայն ինչ-ինչ դրվագներ: Ես ուշ ծնված երեխա եմ, և մշտապես շրջապատված եմ եղել սիրով: Այդ զգացողությունը շատ լավ եմ հիշում: Հայրս ճարտարապետ է, սովորել է Մոսկվայի համալսարանի ասպիրանտուրայում: Հենց այնտեղ էլ ծանոթացել է մորս հետ:

Մայրս 10 տարով երիտասարդ էր նրանից, սովորել է քիմիատեխնոլոգիականում: Մի անգամ ֆիլմի նորամուտի ժամանակ հայրս եղել է հայ ընկերոջ հետ և տեղեկանալով մորս՝ իշխանական արմատների մասին (նրա արմատները հայ և վրացի իշխանների ընտանիքից են), հայրս ասել է, որ որմնադիր է:

Ցանկացել է ստուգել, թե արդյոք նա կսիրահարվի՞ պարզ մարդուն: Սիրահարվել է: Նրանք ծանոթությունից մի քանի ամիս անց զաղտնի ամուսնացել են ու Մոսկվայից տեղափոխվել Հայաստան: Հայրս համարել է, որ դա է ճիշտը: Նա սկզբունքային մարդ է, և անգամ կտրուկ, իմ պապը նույնպես:

## Մանկության մասին

Իմ մանկությունն անցել է Երևանում, Թբիլիսիում և Մոսկվայում: Դրանից մնացել է թեթև կյանքի տպավորությունը, թեև եղել են նաև խնդիրներ: Օրինակ՝ դրամական: Հայրս շատ էր ծախսում և գումարը մշտապես չէր բավականացնում: Ընտանեկան բյուջեն պահում էր մայրիկը: Հայրս ուսանողներից կաշառք չէր վերցնում և խիստ դիրքորոշում ուներ տվյալ հարցում:

Ինձ ազգականներն էին գումար տալիս, ես կուտակում էի դրանք ու գաղտնի տալիս էի հորս: Հիշում եմ, որ 9-րդ դասարանում վիճեցի նրա հետ. ասացի, որ կաշառք եմ վերցնելու, հաջողակ եմ լինելու՝ ի տարբերություն նրա...: Մի խոսքով՝ տարբեր իրավիճակներ են եղել: Ընդհանուր առմամբ, մանկությունից մնացել են մեծ սիրո ու վառ տպավորություններ:

## Կրթության մասին

Դպրոցում ինձ նույնպես սիրում էին: Խաղում էի ֆուտբոլի, բասկետբոլի հավաքականներում, ուրախների և հնարամիտների ակումբում: Դպրոցն ավարտել եմ ոսկե մեդալով և կատակով ասում էի, որ ծնողներիս համար խնայել եմ մի ամբողջ գումար, քանի որ այդ ժամանակ մեդալն «արժեր» 3000 ռուբլի: Դա 1980-ականներն էին, երբ ծաղկում էր կոռուպցիան:

Ես երազում էի սովորել Մոսկվայի պետական համալսարանում (ՄՊՀ), սակայն ծնողներս թույլ չէին տալիս: Միայն մորս ընկերուհին կարողացավ ընդունելության քննություններից ընդամենը երկու շաբաթ առաջ համոզել նրանց: Ես ընդունվեցի ՄՊՀ, սակայն առաջին կուրսից հետո ինձ, ինչպես և մյուս բոլոր տղաներին, զորակոչեցին բանակ:

Ինձ ուղարկեցին Ադրբեջան: Այդ ժամանակ այնտեղ չկար հակամարտություն, սակայն Հայաստանի հետ հարաբերությունները լարվել էին արդեն: Հետո ինձ մոտեցավ մի հայ զինվորական ու հարցրեց, թե արդյոք կցանկանա՞մ ծառայել Հայաստանում: Ես դրական պատասխան տվեցի:

Դրա համար նա ինձնից պահանջեց 300 ռուբլի, ապա դա նվազեցրեց մինչև 50 ռուբլու: Սակայն ինձ մոտ միայն 27 ռուբլի կար: Զինվորականը դա հանդգնություն համարեց և հեռացավ: Ապա հետս զնացքով մեկնող տղաներն ինձ ասացին, որ գումար են պահել ծխախոտի համար, տվեցին ինձ, որ գնամ և ծառայեմ Հայաստանում: Ես այդ 23 ռուբլին հիշեցի ողջ կյանքում:

Իմ բախտը բերել է խորհրդատուների հարցում, և դա իմ հաջողության հիմնական մասն է: Իմ խորհրդատուները եղել են ոչ միայն հայրս, քույրս կամ դպրոցի ուսուցիչներս, այլև հայտնի մարդիկ՝ Եվգենի Պրիմակովն ու Լի Կուան Յուն, և նրանք, ովքեր ինձ շատ օգնեցին բիզնեսում, օրինակ Ռոն Ֆրիմանը:

## Ընկերության մասին

Բնավորությամբ նման եմ մորս՝ թբիլիսյան մարդամոտությամբ, սակայն երբեմն կտրուկ եմ լինում, թեև ոչ այնքան, որքան հայրս. ամեն դեպքում ես ավելի հանդուրժող եմ: Ունեմ մանկության, ուսանողական, բանակային ընկերներ: Դժբախտաբար, մշտական ճամփորդությունների պատճառով շատ ժամանակ չեմ ունենում ընկերների և հարազատների համար: Ոմանք նեղանում են իմ կողմից ուշադրության պակասից, և հարաբերությունները խզվում են:

## Սիրո մասին

Ես վստահ էի, որ կամուսնանամ հայուհու հետ, քանի որ տարբեր մշակույթների մարդկանց մոտ կենցաղային մակարդակում կան մի շարք խնդիրներ, որոնք բարդացնում են կյանքը: Ինձ հետ լինելը հեշտ չէ, հավանաբար, ես պահանջկոտ եմ՝ նաև իմ հանդեպ: Հայրս ինձ սովորեցրել է, որ մշտապես պետք է ձգտել առավելագույնին:

Շատ չեմ սիրում գովել կամ շնորհակալություն շռայլել: Կարծում եմ, եթե շիլան այրվել է, ապա պետք է հայտնել այդ մասին, իսկ եթե ոչ, ապա նորմալ է, և պետք չէ դրա համար առանձին «շնորհակալություն» հայտնել: Կանայք, որոնք եղել են իմ կողքին, հասկացել են դա:

Վերոնիկան իմ առաջին սերը չէ: Ես նրանից առաջ էլ լուրջ հարաբերություններ եմ ունեցել: Բոլոր կանայք ինձ շատ բան են տվել: Ես նույնպես փորձում եմ շատ տալ, և ոչ թե միայն ստանալ:

Զավեշտալի է, որ իմ ամուսնական պատմությունը գրեթե կրկնում է ծնողներիս ամուսնական պատմությունը: Կնոջս հետ ծանոթացել եմ 20 տարի առաջ: Հանդիպել ենք ընդամենը մեկ շաբաթ: Երրորդ հանդիպումից հետո Վերոնիկային ասացի, որ հանդիպելու ժամանակ չունեմ նրա հետ:

Մի խոսքով՝ ցանկանում եմ, որ նա լինի իմ երեխաների մայրը: Վերոնիկան համաձայնվեց: Ինչպես ծնողներիս դեպքում էր, մենք նույնպես ամուսնացանք առանց ծնողների համաձայնության և առանց հայկական մեծ հարսանիքի: Ծնողներս Վերոնիկայի հետ ծանոթացան ավելի ուշ:

Մենք նրա հետ նման ենք, սակայն միաժամանակ շատ տարբեր ենք: Երբեմն ինձ թվում է, թե ծնողներս նրան ավելի շատ են սիրում, քան՝ ինձ: Վերոնիկան իսկական կին է: Նա եկավ մեր տուն, և փորձեց իմ հարազատներին ու մերձավորներին դարձնել իրենը, իսկ դա հեշտ չէ. ամեն օր պատահում էին ինչ-ինչ մանրուքներ:

Երբ ծնվեց մեր առաջին որդին, ես Վերոնիկային ասացի, որ հայկական ավանդույթի համաձայն, առաջնեկ որդու անունը տղամարդն ընտրում է անձամբ, և անգամ չի հարցնում կնոջը, քանի որ նա ժառանգորդ է: Սակայն ես ավելի դեմոկրատ մարդ եմ, և նրան առաջարկեցի ընտրության երեք տարբերակ՝ Լևոն, Աշոտ ու Դավիթ:

Նա խնդրեց է, չսկսեց վիճել և ընտրեց Դավիթ անունը, ինչը նրան առավել մոտ էր: Վերոնիկան ինձնից ավելի հաճախ է լինում Հայաստանում, նա այնտեղ ունի մի շարք նախագծեր: Նա չի դարձել հայուհի և պահպանել է իր ինքնությունը:

## Հաջողության մասին

Հաջողությունը, բնականաբար, փոխել է ինձ: Ես հեշտ իրավիճակում չէի. 23 տարեկանում ես դարձա գործադիր տնօրեն և պետք է ղեկավարեի ընկերություն, կայացնեի ինքնուրույն որոշումներ: Դա վիթխարի պատասխանատվություն էր, որին ամեն ոք չէ, որ պատրաստ է:

Իհարկե, երբ դու երիտասարդ ես, պետք է ապավինես քեզնից ավագների վրա և արժանանաս նրանց հարգանքին: Քեզ հարգում են, կամ էլ ոչ, իսկ այն, որ քո պաշտոնը կոչվում է «գլխավոր գործադիր տնօրեն» չի հուզում ոչ ոքի: Ես չեմ ունեցել ո՛չ կապեր, ո՛չ կապիտալ:

Ես սկսել եմ զրոյից՝ և՛ ռուս հաճախորդների, և՛ աշխատակիցների, և՛ օտարերկրացիների հետ: Հավանաբար, մարդիկ հավատացել են ինձ: Վստահությունը սկզբունքային բան է աշխարհում: Երբ մարդիկ վստահում են միմյանց, նրանք քիչ ժամանակ, ուժ ու միջոցներ են ծախսում սեփական անվտանգության համակարգերի կառուցման վրա:

Եվս մի կարևոր բան է պլանավորման հորիզոնն ու հետևողականությունը: Քչերն են ունակ պլանավորել ապագան՝ տասնամյակների կտրվածքով: Բարեբախտաբար, դա կարողանալը մշտապես եղել է իմ մրցակցային առավելությունը: Չէ՞ որ մարդկանց 95 տոկոսը չի կարող ասել, թե իրեն ինչպես է տեսնում 20-30 տարի անց:

## Ազատության մասին

Կա սոցիալական փոփոխությունների չորս մոդել՝ էվոլյուցիա, հեղափոխություն, բարեփոխում և ինկվիզիցիա: Ես հակված եմ առաջինին, այն հնարավորություն է տալիս փոփոխությունների հասնել առանց կորուստների և հաշտեցնել տարբեր խմբերի շահերը: Ես մշտապես փորձել եմ գտնել համագործակցության ուղին, և դրանով իսկ ինչ- որ բան փոխել համակարգում: Այժմ համակարգն առավել հասկանալի է և ունի խաղի առավել հստակ կանոններ, քան՝ 20 տարի առաջ էր:

Ես հազվադեպ եմ մասնակցել հանրահավաքների: Գնացել եմ օրինակ 1991 թվականին, երբ խռովություն էր, և նաև երեք տարի առաջ, երբ Չուլպան Խամատովան հանրահավաք էր կազմակերպել ընդդեմ այլատյացության: Ես հարգում եմ այն մարդկանց, որոնք իրենց տեսակետն են հայտնում հանրահավաքների ժամանակ, սակայն չեմ սիրում զանգվածային միջոցառումներ, անգամ համերգների ժամանակ հարմարավետ չեմ զգում ինձ:

Թեև հիշում եմ 1988 թվականին Երևանում տեղի ունեցած հանրահավաքը, երբ «Թատերական» հրապարակ էր դուրս եկել 300.000 հայ, վերելքը ֆանտաստիկ էր: Սակայն էմոցիոնալ այդ զարթոնքն արագորեն մարեց: Ես հասկացա, որ հանրահավաքները, ինքնին, անիմաստ են, համակարգի հետ պետք է պայքարել այլ կերպ:

Հեղափոխությունից հետո չեն հաղթում են ո՛չ կարմիրները, ո՛չ էլ սպիտակները, հաղթում են մոխրագույնները, այդպիսին է օրինաչափությունը: Իսկ ինչպես գիտենք, մոխրագույններին փոխարինելու են գալիս սևերը:

## Կարևորի մասին

Պետք է փորձել քեզ տեսնել սերնդի համատեքստում, որում դու հետք ես թողնում: Ինձ մշտապես դուր է եկել անհնարինը հնարավոր դարձնելը, որովհետև մարդը պետք է ապրի վաղվա օրվա մասին մտածելով:

Ռուսաստանում բոլորն ապրում են օրով, սակայն նրանք, ովքեր իշխանության մեջ են, կարծես թե մտածում են, որ ապրելու և իշխելու են հավերժ...: Նման հակասությունները, անհետևողականությունը լիովին զարմացնում են ինձ:

## Հավատքի մասին

Ես Հայ առաքելական եկեղեցու գերագույն հոգևոր խորհրդի անդամ եմ: Բավական երկար ժամանակ նվիրում եմ հուշարձանների վերականգնմանը, այդ թվում՝ հոգևոր: Չեմ կարող ասել, որ պարբերաբար եկեղեցի եմ գնում և արարողակարգի մասնակցում, սակայն անկեղծ հավատում եմ Աստծուն և հիմնարար արժեքներին...:



## Վախի մասին

Ամենից ավելի վախենում եմ կորցնել ինքնահարգանքը: Ինձ համար շատ լուրջ վախ է հասկանալ այն, որ արել եմ մի քայլ, ինչն ինքս համարում եմ անընդունելի: Այդ վախի պատճառով ես հաճախ արել եմ ավելին, քան՝ պետք էր: Փորձելով վերապապահովագրել ինքնահարգանքը՝ ես երբեմն գործել եմ անգամ ի վնաս իմ բիզնեսի:

## Փողի մասին

Երբ ավագ որդիս դարձավ 13 տարեկան, մենք Վերոնիկայի հետ որոշեցինք, որ մեր փողերը կծախսենք այնպիսի նախագծերի վրա, որոնք կօգնեն աշխարհը փոխել դեպի լավը: Մեր երեխաները գիտեն, որ նրանց որևէ ժառանգություն չի մնալու: Մենք նրանց կրթություն ենք տալիս, և կարծում ենք, որ ապագայում նրանք կկարողանան ապրել ինքնուրույն: Բնականաբար, կա որևէ անշարժ գույք՝ ոչ ամենաշքեղը, որպեսզի նրանք ունենան ինչ-որ հիմք, սակայն միայն այդքանը:

Ես կատարելապես հանգիստ եմ վերաբերվում նյութական բարիքներին, անտարբեր եմ մեքենաների, ինքնաթիռների և հարստության այլ ատրիբուտների հանդեպ: Միակ բանը, որի վրա ես գումարներ եմ ծախսում, գրքերն են ու բարեգործական նախագծերը: Մենք դրանցից ունենք բավական շատ, և գլխավորն ավարտին հասցնելն է:

## Երեխաների մասին

Չորսն էլ շատ տարբեր են, բոլորն էլ տաղանդավոր են՝ իմ հայրական աչքով: Ցանկալի է, որ նրանք իրենց գտնեն այս աշխարհում, որպեսզի նրանք ունենան նպատակ: Երբ ես 22 տարի առաջ մտա բոլորին անհայտ «Տրոյկա դիալոգ» ընկերություն՝ 10 անգամ ավելի ցածր աշխատավարձով, քան նախորդ աշխատավայրում էր, ես գիտեի, թե ինչի եմ ցանկանում հասնել ապագայում: Եթե դու ունես նպատակ և հաջողությունը չափելու համակարգ, ապա ապրելն առավել հեշտ է:

## Երեք բնութագրող բառ իր մասին

Առաջինը. Ես շատ շփվող եմ: Ես անհավանական շատ կապեր ունեմ կատարելապես տարբեր շրջանակների, հաճախ անհամատեղելի մարդկանց հետ. կան նաև ավագ սերնդի ներկայացուցիչներ, ինչպիսին որ Պրիմակովն է ու նրա մոտ ընկերները, ռուս և արևմտյան գործարարներ, մտավորականներ: Չեմ կարող ասել, որ նրանք բոլորն ինձ համարում են «յուրային», սակայն այդ շրջանակներից յուրաքանչյուրն ընդունում է ինձ:

Երկրորդ. Ինձ համար շատ հետաքրքիր է ապրել, ես «քաղցած եմ» տարբեր նախագծերի հանդեպ, և հաճախ միանգամից անում եմ մի քանի բան: Այդ պատճառով ես կարող եմ երբեմն նեղացնել իմ անուշադրությամբ և անմիջապես չնկատել: Սակայն շատ եմ ցավում դրա համար:

Երրորդ. Համառ եմ: Երբեք չեմ մտածել, որ այդքան հետևողական կլինեմ իմ գործողություններում:

www.168.am

# ՄԵՆՔ ԵՆՔ ՄԵՐ ԼԵՌՆԵՐԸ



Արդի ժամանակներուն տեսական միջոցներու բազմացումով, քաղաքներ կամ երկիրներ աւելի հեշտ կը ճանցուին իրենց իւրահատուկ խորհրդանիշներով: Այսպէս, օրինակի համար ճարտարագէտ Կիւստաւ Էյֆէլ իր աշտարակով պաշտօնապէս կնքած է ոչ միայն Փարիզը կամ Ֆրանսան, աւելին հեղինակին ստեղծագործութիւնը եզակիօրէն անմահացած է իր իսկ ազգանունով:

Անդին, Եդւարդ Էրիքսէնի Ծովանոյշ համեստ քանդակը հանրութիւնը ընդունած է իբր Գոբէնհակէնի խորհրդանիշ, որը միեւնոյնատեն մեզի կը յուշէ Դանիան. Վենետիկն իր Ռիալթոյի կամուրջով, Հռոմը Թրէվիի Աղբիւրներով կամ Երեւանը՝ Քոչարի Սասունցի Դաւիթ-ի արձանով, Թորոնթօն իր Սի Էն աշտարակով: Դժուար է պահ մը մտածել, որ այդ խորհրդանիշ Էյֆէլի աշտարակը եթէ չ ըլլար եւ մեր երեւակայութենէն անհետ կորէր վայրը, կամ պարզապէս, Փարիզը տեսնել առանց իր աշտարակին...

Այստեղ, նպատակն է ըստ արժանւոյն գնահատել նման ստեղծագործութիւն մը՝ որ անտարակոյս ունի բոլոր այդ վերեւը նշուած տեղ խորհրդանշող յատկութիւնները եւ աւելին, հեղինակուած հայ տաղանդաւոր արձանագործի մը կողմէ: Այս արուեստագէտը, հակառակ իր ժամանակակից բոլոր դժնդակ պայմաններուն, խիզախօրէն իրագործած է կոթող մը որ կարեւոր մասնիկն է եւ զարդը մեր վերջին քառասնամեայ ազգային զսպուած քաղաքական ձգտումներուն: Կառոյց մըն է, որ անտարակոյս գալիք դարերուն եւս պիտի տեւէ, քանի հեղինակը ինք միայն ներշնչուած չէ, այլ անով նաեւ ներշնչած ամբողջ ժողովուրդ մը:

## ՄԵՆՔ ԵՆՔ ՄԵՐ ԼԵՌՆԵՐԸ,

### հեղինակը ՍԱՐԳԻՍ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ 1923-2001

Ծնած է Բանազուր գիւղ, Արցախ, Սեպտեմբեր 5, 1923-ին: Եօթ տարեկանին ընտանեօք կը տեղափոխուին Երեւան: 1942-ին կը զօրակոչուի Սովետական բանակ եւ կը մեկնի Եւրոպական ճակատ: 1946-ին կ՚ընդունուի Երեւանի Գեղարուեստի Ինստիտուտը, որը կ՚աւարտէ գերազանց գնահատականով: Կանուխ այս տարիքէն արդէն իսկ կը ցուցաբերէ իւրայատուկ լուծումներով քանդակներ որոնք կ՚արժանանան Հայաստանի եւ Սովետական Միութեան բարձրագոյն գնահատականներուն: 1954-ին կը դառնայ լիրաւ անդամ Հայաստանի Նկարիչների Միութեան: Իր գործերը կը պարփակեն լայն աշխարհագրական կարկին մը:

Յիշեմ մէկ քանին

1957 – Հունան Աւետիսեան (պղինձ, կրանիտ), Կապան, ՀՀ:

1954 – Ստեփան Շահումեանի (պղինձ), Երեւան, ՀՀ:

1954 – Շուշանիկ Կուրղինեանի մահարձանը, Կոմիտասի անուան զբոսայգի, Երեւան, ՀՀ:

1954 – Մրցոյթներ, Աւետիք Իսահակեանի մահարձանը:

1954 – Յակոբ Պարոնեանի յուշարձանը (պազալդ), Երեւան, ՀՀ:

1954 – Զօրավար Ստեփան Գինոսեանի կիսանդրին Աղխա գիւղ, Վրաստան:1954 Լենինի յուշարձանը (պազալդ) Սներսկայա, Կրասնոտար, Ռւ. Հ:

1973 – Գերագոյն Սովետի «Պատւոյ Նշան» տւչութիւն:

Մասնակցած է միջազգային արուեստի փառատօններու Ռուսաստան, Պուլկարիա, Ֆրանսա, Իտալիա Քարրարայի մէջ կը ներկայացնէ իր ուշագրաւ Ղարաբաղցիները , եւ հուսկ Գանատա ԷՔՍԲՕ'67-Մոնթրէալ:

## ԽՈՐՀՐԴԱՆԻՇԻՆ ԾՆՈՒՆԴԸ

Հայկական Ցեղասպանութեան յիսնամեակին առիթով, 1965-ին աշխարհի տարածքին զանազան յուշահամալիրներ բարձրացան: Օր ըստ օրէ թուլացող Սովետական կարգերը նոր յոյսեր ներշնչեցին հայ ժողովուրդին: « Մեր հողեր ը, Մեր հողերը » լոզունքներով ցոյց ընող Հայաստանը կրցաւ իրագործել աննախադէպն ու անկարելին: Երեւանի մէջ Ծիծեռնակաբերդի Եղեռնի Յուշահամալիրին իրագործումը եզակի էր իր քաղաքական եւ ճարտարապետական լուծումներու բարդութեամբ: Արցախցին նոյն ներշնչումով, ուշի ուշով դիտեց այս ծաւալումները: Ստալինեան կարգերը այլեւս փոխուած էին:

Իբր անուանի քանդակագործ, Սարգիս Պաղտասարեանը իր շօշափած նիւթերով կը դրսեւորէր Արցախի ժողովուրդին ազգային ներշնչումները: Եւ ճիշտ 1965-ին, նախածրագրուած կամ ինքնաբուխ, Լեռնային Ղարաբաղի վարչութեան անպաշտօն հրաւէրով, արուեստագէտը առաջին անգամ Ստեփանակերտի մէջ կը ցուցադրէ իր ամողջական գործերը: Այստեղ իրեն կը թելադրուի հանրութեան համար ստեղծել կոթող մը որ արտայայտէ Արցախցիին կամքն ու միացող ձգտումները: Հուսկ հիմնական գաղափարը կը ծնի աւելի մեծ մաշտաբով Ղարաբաղի մէջ յուշարձան մը կանգնելու: Իր Ղարաբաղցիներ պղնցացոյլ արձանը կը դառնայ նոր յուշարձանին մեկնակէտը, իսկ պատուէրը իրագործելը կը տեւէ երկու տարի: Վերջապէս 1967-ին կը ծնի «Մենք ենք մեր լեռները» (տուֆ) յուշարձանը, որը կը տեղադրուի Ստեփանակերտէն դուրս, ամայի եւ անշուք բլրակի մը վրայ: ՄԵՆՔ ԵՆՔ անուանումը խոտոր կը դպչի Ազերի ղեկավարութեան ականջին եւ կը քննադատուի: Պէտք է յիշենք նաեւ որ Սովետական անձայրածիր կայսրութեան մէջ նման ազգամիջեան խնդիրները, այդ ատեն, կը լուծուէին տարբեր եղանակով: Մեղմացնելու համար կիրքերը եւ ամոքելու համար Ատրպէյճանի ղեկավարութիւնը, 1969-ին ի պատիւ Բ-Աշխարհամարտի զոհուածներուն արուեստագէտը կը պատրաստէ յուշարձան նուիրուած Չարդախլուի զոհերուն, Չարդախլուի մէջ, Ս. Ատրպէյճանի Հանրապետութիւն:

## ՄԵՆՔ ԵՆՔ ՄԵՐ ԼԵՌՆԵՐԸ

Այս կոթողը ունի կրաւորական նիստ մը, զետեղուած ճամբուն եզրին, ամայի բլրակի մը վրայ Ստեփանակերտէն քիչ հեռու, այդ ատեն Խոճալուի (այժմ Իվանեան) ճանապարհին: Պաղտասարեանի հայրը Իվանը արհեստով շինարար էր եւ քարկոփ: Իր հօրմէն ժառանգած շինարարական փորձառութիւնը կ՚ընծայէ իրեն կոթողային խնդիրները լուծելու կարողութիւնը: Քանդակն ունի պէթոնի եւ տուֆ քարի երեսապատուած միացոյլ շէնքի կառոյց: Այս ծանր կրաւորական զանգուածը իր անուանակոչութեամբ կը կրէ նաեւ խորհրդաւոր գաղտնիքներ: Այր եւ կին են մարմնապէս մինջեւ իրենց վիզերը թաղուած մակերեսէն վար, անոնց ոտքերը կը դպչին հողի ընդերքին: Իրենց այս դիրքը դիտորդին կ՚ընծայէ մեկնաբանութեան ընտրանքը, աւազախրումի կամ վերջնական յարութեան: Անոնցմէ խլուած են ձեռքերու արտայայտութիւնը: Լուր են, կնոջ բերանը փակ է հինգ աստիճան կապով մը, մինջ այրինը հազիւ նշմարելի: Անոնց արտայայտութիւնը նաեւ ունի Մոնա Լիզայական խորհրդաւորութիւն: Տանջուած եւ համբերող կը թուին ըլլալ, սակայն ունին հեզնական ժպիտ մը ժամանակաւոր այս կացութեան: Օտար դիտորդին համար, առանց տեղւոյն պատմութիւնը իմանացած ըլլալու, հաւանական է որ պիտի նոյնացնէր Զատկեան Կղզիներու ծովափին շարուած, կամ ալ Նեմրութ Լեռան ցիր ու ցան զգետնուած դիւձազնեան գլուխներուն:

Կոթողին տեղադրումն ու արտայատչական ընտրութիւնը, ըստ ինքեան, կը թուին ըլլալ արդիւնքը բծախնդիր ծրագրաւորման մը իր խորհրդատու պատուիրատուներուն: Գործածուած է չափազանց զգոյշութիւն ժամանակակից Ազերի վարչակազմը որեւիցէ կերպ չքրքրելու, միեւնոյն ատեն ամբողջութեամբ կարենալ արտայայտելու Արցախցիին խոր ձգտումները: Այս պատճառով իսկ տեղացին զայն անուանած է Տատիկն ու Պապիկը:

Շ13

**12Ͽ**

# ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆԻ ԿՈԹՈՂԻՆ ՈՅԺԸ

Յետ Ստալինեան քսանականներու տխուր որոշումին՝ Ղարաբաղը Ատրպէյճանին իշխանութեան յանձնելէն ետք, տեղւոյն հայութիւնը երբեք չէր հաշտուած այս բիրտ կացութեան: Երկար տարիներ սպասողական դիրքի վրայ մնալէ ետք զանազան պարագաներ պատճառ դարձան, որ ժողովուրդը տուեալ առիթները օգտագործէ դրսեւորելու իր զսպուած ցասումը: Շատ անգամ, լոկ արուեստի միջոցով արտայայտութիւն մը, բազմիցս աւելի ազդեցիկ կ՝ըլլայ քան քաղաքական արհեստի պոռթկումները: Ահաւասիկ այս կոթողը, իր ժամանակին, արցախցիին կամքին խաղաղապաշտ արտայայտութիւնը եղաւ ուղղուած Ազերի համակարգին:

Իւրաքանչիւր նման կոթող նախ քան իր վերջնական ընդունելութիւնը, առանց բացառութեան, միշտ կ՝անցնի երկունքէ մը: Նոյնիսկ Էիֆէլի աշտարակը ունեցած է Վիքթոր Հիւկոյի նման անուանի հակառակորդները: Այս կոթողի պարագային, գեղագիտականէն շատ հեռու՝ եղած է եւ տակաւին կը մնայ քաղաքականը:

Նախ Արցախցին, ապա արուեստագէտը հանդերձ իր պատուիրատուներուն բացումէն միայն 24 տարիներ ետք, անոր ընդմէջէն, տեսան Ղարաբաղի անկախութիւնը: Ասիկա յիրաւի կարելի է սեպել մեծ յաղթանակ մը: Սակայն, այս կոթողը տակաւին սպասման մէջ գտնուելու լուրջ պատճառ մը եւս ունի: Միջազգային քաղաքական հանրութիւնը այնքան ատեն որ տակաւին կը մնայ տարտամ եւ չի ճանչնար Ղարաբաղի ամբողջական անկախութիւնը, այս կոթողը պիտի շարունակէ իր սկզբնաւորած առաքելութիւնը:

Քանի մը օեր առաջ, Ղարաբաղը տօնեց իր անկախութեան 22-րդ ամեակը: Նորածին հանրապետութիւնը դարձաւ մանուկ, ապա պատանի, իսկ այժմ արդէն թեւակոխած է իր երիտասարդութիւնը: Այս տարեփոխութիւնը թէպի ճանաչում խոստումնալից է եւ այս կոթողը համբերութեամբ կը սպասէ այդ մեծ պահին ամբողջացնելու համար իր իսկ առաքելութիւնը, որուն համար ի սկզբանէ կոչուած է:

Վստահօրէն, միայն այդ հանգրուանէն ետք, Պաղտասարեանի այս կոթողը պիտի ստանայ նոր շուք եւ թարմ կոչում: Փոխան իր աննշան եւ ամայացած դիրքին պիտի դառնայ կիզակէտ եւ բարքաւաճ հաւաքատեղի մը բոլորին համար, իսկ յատկապէս Արցախցիին ինքնավստահութեան եւ կամքի ոյժի մկրտութեան եւ երդման վայր:

# ԱՐՈՒԵՍՏԱԳԵՏԻՆ ՊԱՏԳԱՄԸ

Նման կոթողներու հեղինակներու հանդէպ ժողովուրդներու գնահատանքն ու երախտագիտութիւնը բազմազան են: Մինչ մին անմահացուցած է գործ մը իր հեղինակին անունով, ուրիշ մը կ'ընտրէ մնալ անտարբեր, կամ ալ կը մոռնայ նոյնինքն հեղինակին ինքնութիւնը:

Վենետիկի Ռիալթօ կամուրջը եղած է արդիւնքը ճարտարապետական մրցոյթի մը, որուն մասնակցած են ժամանակակից տիտաններ, ինչպիսիքն են Միքելանճելօն, Փալլատիօն, Սանսովինօն: Սակայն, աննշան մնացած ճարտարապետ մը Անթոնիօ տա Փոնթէն եղած է անոր հաղթական հեղինակը:

Նշեմ նաեւ աւելի յոռեգոյն օրինակ մը: Վերեւը նշուած մայրաքաղաքներուն շարքին կայ նաեւ Մոսկուան: Քրէմլինի նշանաւոր Սբ. Բարսեղի պսպղուն գմբեթներով տաճարը հնուց եղած է խորհրդանիշը Ռուսաստանի մայրաքաղաքին: Կ'ըսուի՝ որ առ ի գնահատանք այդ բացառիկ գործին, պատուիրատու Ջարը՝ այս-պէս ճանցուած Իվան Ահարկուն, Եաքովլեւ ճարտարապետ եղբայրներուն աչքերը կուրցնել կու տայ , որպէզի անոնք երբեւիցէ չի կարենան նման տաճառ մը կրկնել:

Մենք մեզ համեմատելով այլ ազգերու հետ, ցաւօք հայ ազգային գիտակցութեան մէջ ժողովուրդին սպասարկու բարձրագոյն մակարդակի հեղինակներու հանդէպ ըստ արժանւոյն գնահատանքը տակաւին կը մնայ սաղմնային մակարդակի: Այսպէս լաւագոյն պարագային, հաւանական է որ յօդուածս ընթերցողներէն աննշան տոկոս մը միայն իմացած ըլլար Սարգիս Պաղտասարեանին մասին:

Արցախը խորհրդանշող այս իւրայատուկ քանդակը ծնած է հայ ժողովուրդին երկունքէն եւ ներշնչած համայն ժողովուրդը, ներառեալ Հայաստանի եւ սփիւռքի հայութեան, մարտնչելու ի գին յոռեգոյնին, մինչեւ յաղթանակ: Այսօր այս կոթողը խորհրդանիշն է եւ ուրոյն կնիքը Արցախի Հանրապետութեան: Եթէ նկատենք անիկա կը գրաւէ պետական զնանշանին ճիշտ կեդրոնը, որը իւրաքանչիւր Արցախցի զինուոր կը կրէ իր պատուարժան գլխարկին եւ ուսին վրայ:



Թող արուեստաբանները վիճին այս գործին ծաւալի խախտումներուն, անոր տեղադրութեան վայրին, կամ անոր շինանիւթի ընտրութեան կամ դէժ արտայայտչութեան մասին: Պարզապէս, անոր հանրութեան կողմէ ընդունելութեան կամ յաջողութեան բարձրագոյն չափանիշը կարելի է սեպել, նկատելիօրէն սփիւռքի կողմէ, անոր լուսանկարներուն վերատադրութեան թիւը մամուլին էջերուն մէջ:

Այս Սեպտեմբերի հինգին, Սարգիս Պաղտասարեանի ծննդեան իննսունամեակն է: Ըստ սովորութեան, այս առթիւ, ի բաց արեալ Երեւանէն, մեր մշակութային եւ քաղաքական մարմինները եւ յատկապէս մամուլը մնաց իր թմբիրին մէջ հանդէպ իր ազնիւ արուեստագետին որ ստեղծագործեց գլուխ գործոց մը, ուրոյն ժողովուրդին իղձերուն եւ ներշնչումին համաձայն:

Յետ այսու, փափաքելի է որ իւրաքանչիւր առիթով երբ ըլլանք «Մենք Ենք Մեր Լեռները» կոթողին առջեւ, գտնուինք դէմ հանդիման Արցախի զինուորին զինանշանին՝ կամ պարզապէս նկարին, գիտակցինք անոր հեղինակին ինքնութեանը, ինչպէս երբ գտնուինք Երուանդ Քոչարի կամ Մարտիրոս Սարեանի նման մեծ արուեստագէտներու գործերուն առջեւ:

Սարգիս Պաղտասարեանը իր գիտակից կենդանութեան ընթացքին մեզ ազգովին ըրաւ իրը, իսկ մենք այժմ երախտագիտութեամբ պարտինք ճանչնալ զինք լիիրաւ մերը:

*Յարութ Մարտիրոսեան, Ճարտարապետ*
*Լուսանկարները՝ Մկրտիչ Մկրտչյանի*
*Սեպտեմբեր 5, 2013, Թորոնթօ, Գանատա*

# Մեր հայ մնալու գաղտնիքը հայոց հողում է պահված

Ձեր այցելության համար, մեզ պարգևած անաղարտ կոմիտասյան երգը վայելելու համար ու «կենդանի Կոմիտասի» հետ հանդիպելու համար՝ շնորհակալություն:

Որպես ունկնդիր հասկացա, որ այս համախմբով սփյուռքում շրջագայելու գաղափարը հենց Ձերն էր՝ տիկին Հրանուշ, որի համար ողջ հայության անունից թույլ տվեք ասելու հետևյալը. «Դուք Ձեզ հետ բերել էիք հայոց պատմությունը՝ կերպավորված «կենդանի Կոմիտասով»: Հայ ազգի ճակատագրի մասին յուրովի պատմվեց, ապրվեցին վայրկյաններ, որոնք միլիոնավոր հայերի են զգաստացնելու՝ հպարտանալու համար իրենց ազգությամբ, իրենց արմատներով, իրենց հայրենիքով»:

Հանդիսությունից հետո, բեմադրությունից դուրս մենք հայ ժողովրդին երջանիկ տեսնելու հույսով ապրող Հայաստանի սփյուռքի նախարարին տեսանք, մեր այսօրվա դառնություններից խռոված հայ դերասանին տեսանք, որն ամեն ինչ նկատեց, բայց՝ լուռ... Նորից իր նման փորձեց շնորհակալ լինել Հայաստանի սփյուռքի նախարար տիկին Հրանուշ Հակոբյանին՝ այսպես, այսքան ճշմարիտ աշխարհի հայությանը ներկայանալու համար, մենք էլ՝ ոչ բարձրաձայն, բայց շշնջացինք, որ աշխարհի տարբեր ծայրերում իրենց ճակատագրից խռոված հայ հոգիներ շատ կան, որոնց հայ մնալու գաղտնիքը հայոց հողում է պահված...

Ձեր այցելությունից ոգևորված՝ մեր փոքրիկ հայ դպրոցականները մի քանի օր հետո Կալուգայում ժողովուրդների բարեկամության փառատոնի ժամանակ բեմից հայերեն լեզվով աշխարհահռչակ աստղաֆիզիկոս Վիկտոր Համբարձումյանի կտակը կարդացին ու խոստացան իրենց թոռներին ու ծոռներին, հաջորդ սերունդներին փոխանցել գաղափարներ, որոնց մեջ հայոց լեզուն ամենաթանկն է: Փոքրիկ Մարիայի «Կարոտ» երգի կատարումը յուրովի հուզեց ոչ միայն հայրենիքին կարոտած հայությանը, այլև՝ մնացած ազգերի ներկայացուցիչներին, որոնք ապրում և արարում են Ռուսաստանի Կալուգայի մարզում, որն իր բնությամբ մի քիչ էլ նման է մեր հայրենի բնությանը...

*Տաթևիկ ՆԵՐՍՈՅԱՆ,*
*17 նոյեմբերի 2013 թ., ք. Կալուգա*

# «Երբ հավատում ես նրանց ստեղծարար ներուժին, նրանք սկսում են ուղղակի հրաշքներ գործել»



Շուրջ 25 տարի է՝ աստղագետ Ավետիք Գրիգորյանի ջանքերով գիտատեխնիկական ուղղվածության «Տիեզերք» ակումբներ են գործում Երևանի երկու կրթօջախներում՝ «Քվանտ» վարժարանում և «Մխիթար Սեբաստացի» կրթահամալիրում: Կրթօջախներում դասընթացը վարում է նրա աշակերտներից մեկը՝ Բյուրականի աստղադիտարանի ասպիրանտ Լևոն Արամյանը:

Աստղագետը տարիներ շարունակ անվճար հիմունքներով փորձում է գիտելիքներ փոխանցել ապագա սերունդներին: Այս տարիների ընթացքում Ա. Գրիգորյանի արտադպրոցական պարապմունքներին հաճախած սաներից շատ-շատերն աշխարհի տարբեր երկրներում շարունակել են զբաղվել գիտությամբ և մեծ հաջողությունների հասել աշխատելով խոշորագույն ընկերություններում: Իր գիտելիքները փոխանցելու և դասընթացը շատերին հասանելի դարձնելու համար աստղագետը գիտահանրամատչելի գիրք էր գրել «Դարերի խորքից՝ դեպի Տիեզերք», որը, ըստ հեղինակի երեխայի մոտ աշխարհայացք է ձևավորում: 5-6 տարի շարունակ աստղագետը փորձում էր միջոցներ գտնել գիրքը տպագրելու համար, և վերջապես երկար սպասվածն իրականություն դարձավ այս տարի: Այս տարի լրացավ նաև «Տիեզերք» ակումբի գործունեության 25-ամյակը:

Այս առիթով էլ զրուցեցինք ՀՀ ԿԳՆ Տեխնիկական ստեղծագործության հանրապետական կենտրոնի տիեզերագիտական խմբակի ղեկավար, «Դարերի խորքից՝ դեպի Տիեզերք» գիտահանրամատչելի գրքի հեղինակ Ավետիք Գրիգորյանի հետ:

***– Հետադարձ հայացք գցելով Ձեր անցած ճանապարհին՝ ի՞նչ մտորումներ ունեք:***

– Անցած ճանապարհը հետաքրքիր է նրանով, որ այն չի նմանվում ոչ մի նմանատիպ կրթական կառուցվածքի, որևէ կրթօջախի, որին կարծես թե պետք է նմանվեր: Այսինքն՝ իրավաբանորեն այն կոչվում է Կրթության և գիտության նախարարության Տեխնիկական ստեղծագործության հանրապետական կենտրոնի տիեզերագիտական խմբակ, սակայն այն նման չէ արտադպրոցական որևէ մի խմբակի: Առաջին հայացքից այդպիսի խմբակներ շատ կան՝ և բնագիտական, և ոչ բնագիտական ուղղվածության, և այս խմբակում ոչ մի արտառոց բան չպետք է լիներ, սակայն ակումբի գործունեության 25 տարիներն արդեն իսկ խոսում են այն մասին, որ սա բացառիկ երևույթ է:

Բացի այդ՝ դրանում ներգրավվել են և ուսանողներ, և շատ այլ մարդիկ, և մեր ակումբի շրջանավարտներից շատերն այս դասընթացներն ավարտելուց հետո նս միշտ կապված են մնացել խմբակին և նրա գործունեությանը: Խմբակը, կարելի է ասել, գործել է՝ որպես ակտիվ հասարակական կազմակերպություն, ավելի ակտիվ, քան այլ իրավաբանորեն գրանցված հասարակական կազմակերպությունները: Ակտիվ՝ թե կրթելու, թե կրթությանը նպաստելու, թե երեխաներին դեպի գիտություն ոգեկոչելու, ինչպես նաև՝ նրանց մեջ որոշակի շատ կարևոր մտածելակերպ մշակելու առումով, և այլն: Եթե դիտարկենք իր գործունեության բազմակողմանիությամբ, ապա այս կարգի խմբակ ստեղծելու ժամանակ մենք չգիտեինք, որ նման բան գոյություն չունի: Իսկ հետագայում, երբ փնտրեցինք նման խմբակներ, որոնց հետ ցանկանում էինք կապ հաստատել, տեսանք, որ ստեղծել ենք մի բան, որի նմանը չկա. Խորհրդային Միության սահմաններում, դրանից դուրս չգտանք նման խմբակ:



Հիմա էլ չենք գտնում այդպիսի խմբակ: Ճիշտ է՝ մեր ակումբը կոնկրետ թեմատիկա ունի՝ տիեզերագիտական թեմաները, բայց այն շատ ավելի լայն է՝ իր դիրքով, խորությամբ, գործունեությամբ, բազմակողմանիությամբ: Այն երեխաներին աշխարհայացք է տալիս և այս ամենով այնպիսի հիմքեր է դնում, որ, անկասկած, այդ երեխաները գնում և հասնում են մեծ հաջողությունների, իսկ հետագայում անպայման հետ նայելով՝ ասում են, թե որտեղից սկսվեց իրենց մեկնարկը՝ մատնանշելով մեր խմբակը: Այսինքն՝ մարդիկ, ասես, հոգեպես կապվում են այս խմբակի հետ, ամեն կերպ աջակցում են և դառնում են հովանավորներ: Կարծես թե նրանց ուղին սկսում է այս խմբակից, և այդ առումով՝ սա բացառիկ բան է, որը բարձրաձայնվեց նաև հոբելյանական միջոցառման ժամանակ, որտեղ խտացված կերպով ներկայացվեց այդ ամենը:

***– Կարծես թե մեծ շուքով եք նշել այն, այնպես չէ՞:***

– Այո, Տիեզերագիտական ակումբի 25-ամյակը հանդիսավորությամբ նշեցինք Հայ-Ռուսական (Սլավոնական) համալսարանի մեծ դահլիճում: Եվ քանի որ անցած ուղին և հաջողությունները մեծ էին, ըստ այդմ էլ՝ հանդիսությունն էր մեծ, մասնակիցներն էին շատ, մոտ 150-200 մարդ, որոնց կեսը կամ ավելին մեր խմբակի տարբեր սերունդների սաներն էին, որոնց մեջ անգամ 40-ն անց մարդիկ կան: Իհարկե, ներկա էին նաև մեծ թվով հետաքրքրասերներ:

***– Այս տարիների ընթացքում Ձեր ձեռքբերումներից ո՞րը կառանձնացնեք: Արդյոք այն նպատակները, որոնք դրել էիք խմբակի ստեղծումը նախաձեռնելիս՝ արդարացա՞ն:***

– Երևի թե՝ այո, ես միշտ անհամբեր սպասում էի, ասում էի, որ ուզում եմ, ի վերջո, տեսնել իմ հետնորդներին, այսինքն՝ իմ կողքին մարդիկ, որոնք գալիս են դեպի գիտություն և տեխնիկա, նվիրվում են այդ բնագավառներին, ու նաև մարդիկ, որոնք ցանկանում են այդ ամենն իրականացնել այստեղ՝ Հայաստանում: Ստացվեց այնպես, որ, իրոք, շատ կարևոր հաջողությունների հասած մարդիկ կան մեր շրջանավարտների մեջ, և այսօր արդեն (թեկուզ քիչ են, մոտ 200 հոգի, քանի որ երկու տարվա դասընթաց է, և երկու տարին մեկ եմ խումբ հավաքում) մեծ հաջողությունների հասած մարդկանց թիվն այստեղ աննախադեպ մեծ է, և նրանք, փաստորեն, այժմ իրենց գործունեությամբ և դիրքով Հայաստանում արդեն նկատելի շերտ, որակ են կազմում:




Մեր հոբելյանական հանդիսավոր միջոցառման ժամանակ իմ նպատակներից մեկն էլ այն էր, որ ցանկանում էի ցույց տալ, որ ընդհանրապես Հայաստանում կան մարդիկ, ովքեր անցել են այս դպրոցը և աշխատում ու վաստակում են Հայաստանում և շարունակում են իրենց գործունեությունը՝ առանց հրաժարվելու իրենց մասնագիտությունից և չգնալով ավելի եկամտաբեր բնագավառներ: Ես հաճախ եմ այդ օրինակները ցույց տալիս, որպեսզի նոր սերունդը ոգևորվի:

***– Հետաքրքիր է, Ձեր շրջանավարտների մեծ մասը Հայաստանո՞ւմ է, թե՞ դրսում, ի՞նչ տվյալներ, արդյունք ունեք:***

– Այո, նրանց մեծ մասը Հայաստանում է, իսկ նրանք, ովքեր դրսում են, ապա,

➲15

14⊃

որպես կանոն, այն բնագավառի մասնագետներն են, որը Հայաստանում զարգացնելը սկզբունքորեն անհնար կլիներ, համենայնդեպս՝ այս փուլում: Օրինակ, որոշակի բնագավառներում ցանկություն ունեցողը չի կարող մնալ Հայաստանում, զբաղվել իր մասնագիտությամբ և առաջխաղացում ունենալ, նա պետք է անպայման գնա Ռուսաստան, Ամերիկա և այլ երկրներ և փորձի այդ միջազգային փորձն իր մեջ կուտակել և ինչ-որ ներդրում ունենալ այդ ոլորտում:

Եվ երբ այդ սովորողը գնում է Հայաստանից, մի կողմից՝ ցավ եմ ապրում՝ որպես հայ, իսկ մյուս կողմից էլ՝ ոգևորվում եմ, որ Հայաստանում չեղած բնագավառն ինչ-որ տեղ այս ուսանողները կարողանում են դրսում յուրացնել, և հույս կա, որ երբևիցե նրանք այդ ամենը կբերեն նաև Հայաստան: Նման բաներ արդեն եղել են, օրինակ, իմ աշակերտներից ոմանք այնպիսի բնագավառներից են նախագծեր բերել Հայաստան, որոնք Հայաստանում ժամանակին գրեթե չկային:

***– Օրինակներ կնշե՞ք:***

– Օրինակ՝ մաթեմատիկոս և ծրագրավորող Կարեն Խաչիրյանը, ով մինչ վերջերս ապրում էր Հարավային Կորեայի Սուվոն քաղաքում և աշխատում էր «Samsung Electronics» կորպորացիայում՝ որպես ծրագրային անվտանգության համակարգերի նախագծող-ճարտարագետ: Նա իմ առաջին սերնդի այն ներկայացուցիչներից է, ով այստեղ ավարտելով իմ դասընթացները՝ գնաց SS ոլորտ, խորացավ ծրագրավորման, մասնավորապես՝ ծածկագրման տեխնոլոգիաների մեջ և, ի վերջո, հրավիրվեց հարավկորեական խոշոր ընկերությունում աշխատելու, որտեղ մի քանի տարի աշխատելով՝ ղեկավարեց մասնագետների խումբ և շատ մեծ հաջողություններ ունեցավ: Իսկ ամենամեծ հաջողությունը համարում եմ այն, որ նա սկսեց նախագծեր բերել Հայաստան:

Նա մինչև հիմա էլ Կորեայից շարունակում է նախագծեր բերել: Այժմ նա գտնվում է ԱՄՆ-ում և կրկին փորձում է նախագծեր բերել Հայաստան: Իսկ դա նշանակում է աշխատատեղեր և գիտատար բնագավառում աշխատող երիտասարդներ: Կամ, օրինակ, Տիգրան Շահվերդյանը, ով «Սելենոխոդ» լուսնագնացի նախագծի ծրագրերի ղեկավարն է և գիտական տնօրենը: Նա նշում է, որ հենց մեր ակումբի շնորհիվ իր մեջ ծնաց սերը տիեզերագնացության հանդեպ և այդ ուղղությամբ շարունակելու համար: Մի խոսքով՝ մեր ակումբի սաները կրկին անկյունաքարային դիրքերում են նմանատիպ բնագավառներում: Նշեմ նաև, որ ակումբի շրջանավարտների մեջ կան նաև տեսաբաններ, օրինակ՝ Ամերիկայում բնակվող ֆիզիկոս տեսաբան Հրայր Մաթևոսյանը, կամ Հայկ Սարգսյանը, ով Հայաստանում է աշխատում: Նա դոկտոր-պրոֆեսոր է և ՀՀ նախագահի մրցանակի դափնեկիր: Նա իրականում շատ լավ օրինակ է մեր երիտասարդների համար, թե ինչպես կարող է մարդը Հայաստանում մնալ, աշխատել և մեծ հաջողությունների հասնել: Տեսական բնագավառում, իրոք, դա ավելի իրատեսական է, քան փորձարարական բնագավառում: Սակայն կան նաև տեսաբաններ, ովքեր գնացել են արտասահման և այնտեղ են հաջողությունների հասել՝ ստեղծելով իրենց ընկերությունները:

***– Փաստորեն, Ձեր սաներն առաջատար դիրքերում են, երևի հենց դա էլ համարում եք Ձեր խմբակի կարևորագույն ձեռքբերումներից մեկը, այնպես չէ՞:***

– Երբեմն այստեղ հարց է դրվում՝ արդյո՞ք այդ ամենը կարելի է վերագրել խմբակին: Նախ՝ ասեմ, որ այստեղ կարևոր է, որ աշակերտների ծնողներն են իրենց լավ դաստիարակել, երկրորդ՝ նրանք սովորել են կամ ֆիզմաթ դպրոցում, կամ «Քվանտ» վարժարանում և այլուր, ինչը ևս շատ կարևոր է: Բայց հարցը նաև նրանում է, որ՝ այո, նրանք իրենց առաջխաղացման մեջ, տարբեր մարդկանցից և կրթօջախներից բացի տեսնում են նաև խմբակի կարևորությունը: Այստեղ պետք է նշել, որ խմբակը նրանց տվել է մի բան, որը բացառիկ է. դա ստեղծագործական ունակությունն է և ազատությունը, որը թույլ է տալիս զարգացնել այդ ունակությունը: Ստեղծագործական ազատության, մոտեցումների և մեթոդաբանական առումով՝ խմբակը զգալի իմպուլս է տալիս այդ երեխաներին, եթե նրանք այդ դպրոցն անցնում են:

**– Ազատություն ասելով՝ ի՞նչ նկատի ունեք:**

- Մի հետաքրքիր բան ասեմ. այն, ինչը ես համարում եմ, որ կարելի է վստահել երեխային, որ նա կարող է այդպիսի հետազոտական աշխատանք կատարել և այլն, սովորաբար ոչ մի տնօրեն կամ ուսուցիչ չի պատկերացնում: Երբ մի անգամ Մոսկվայում գործուղման ժամանակ խոսում էի ինչ-որ տիեզերական նախագծի մասին, ուզում էի իմ երկու ուսանողներին էլ ներգրավել, հարցրեցի՝ իսկ ինչու չեք ներգրավում նաև աշակերտներին, նրանք խիստ զարմացան:

Բայց երբ դու հավատում ես այդ երեխաների երևակայության ուժին, ստեղծագործական ներուժին և այդ հավատը ներշնչում ես նաև նրանց, նրանք ուղղակի ծաղկում են, նրանց աչքերը փայլում են, նրանք սկսում են ուղղակի հրաշքներ գործել: Դու իրենց առաջ դնում ես խնդիր, ասենք՝ ինչ-որ գյուտարարական, գիտական խնդիր, և այլն, իսկ ինքը սկսում է այնպիսի մտքեր գեներացնել, որ ինքն էլ իրենից չէր սպասում և չէր կարծում, որ կարող է այդպիսի մտքի թռիչք ունենալ: Կարծում եմ, որ այս հավատն է, որ օգնել է նրանց և ինձ՝ այդքան հաջողությունների հասնել: Ուղղակի պետք է հավատալ և օժանդակել և ճիշտ մեթոդով տանել նրանց՝ դեպի ստեղծագործական որոնումները:

*Լուսինե ՄՈՎՍԻՍՅԱՆ*

# Հետաքրքիր է իմանալ. ուշագրավ փաստեր Ստալինի մասին



Ստալինի մասին բացասական կարծիքների սակավություն երբեք չի եղել: Սակայն օբյեկտիվորեն պետք է ընդունել, որ նա ունեցել է բազմաթիվ դրական հատկանիշներ:

Ստալինի համար օրական ընթերցանության նորման կազմում էր 300 էջ: Նրա գրադարանում կար 20 հազար գիրք:

Նրա աշխատանքի արդյունավետությունը կայանում էր նրանում, որ նա հեռահար նպատակներ էր դնում իր առջև:

Նա շատ խելացի մարդ էր, և նեղվում էր հիմարների միջավայրում գտնվելուց: Ստալինը չէր պայքարում օղու դեմ: Նա կարծում էր, որ պարապ ժամանակի դեմ պայքարելը շատ ավելի կարևոր է:

Յուրաքանչյուր հաստատություն ուներ իր սպորտային դահլիճը:

ԽՍՀՄ բոլոր քաղաքներում Ստալինի ժամանակներից զբոսայգիներ էին մնացել, որոնք ծառայում էին մարդկանց հանգստի համար: Այդտեղ կային շախմատի և բիլիարդի խաղասրահներ, խաղա և պարահրապարակ:

Ստալինը մտածողությամբ նման էր Լենինին, սակայն նրա ֆանատիզմը տարածվում էր ոչ թե Մարքսի վրա, այլ կոնկրետ խորհրդային ժողովրդի: 2-րդ համաշխարհային պատերազմի տարիներին նա իր որդիներին ուղարկում էր ճակատ մյուս զինվորների պես հավասար:

# Այսօրվա երիտասարդ նկարիչներն ունեն մեր երկրի սահմաններից դուրս ցուցադրվելու խնդիր





**HayNews.am-ի զրուցակիցն է երիտասարդ վանաձորցի գեղանկարիչ Արտյոմ Բասենցին:**

***– Օրերս եք վերադարձել Կալուգա քաղաքից, որտեղ կազմակերպված ցուցահանդեսին ներկայացվել են վանաձորաբնակ երիտասարդ գեղանկարիչների ստեղծագործությունները: Ի՞նչ արձագանքներ եղան ցուցահանդեսից:***

– Հոկտեմբերի 26-ին ՌԴ Կալուգա քաղաքի АртЗавод ցուցասրահում մեծ հանդիսավորությամբ բացվեց Армянские монологи (Հայկական մենախոսություններ) խորագրով վանաձորաբնակ 7 երիտասարդ գեղանկարիչների ստեղծագործությունների ցուցահանդեսը: Ռուսաստանում ավելի քան 2 տարի գործող և մեծ ճանաչում վայելող Գեորգի Թովմասյանի անվան բարեգործական ֆոնդի նախագահ Մենուա Մկրտչյանի հրավերով ցուցահանդեսին ներկայացվեցին գեղանկարիչներ Տիգրան Հարությունյանի, Վահան Շահբազյանի, Տարոն Խաչատրյանի, Միեր Չատինյանի, Քրիստինե Ասլանյանի, Սոնա Հովհաննիսյանի և իմ՝ ընդհանուր



թվով 50 ստեղծագործությունները, որոնք ցուցահանդեսի ողջ ընթացքում բարձր գնահատվեցին ու ջերմորեն ընդունվեցին տեղի արվեստասեր հասարակության և երիտասարդ գեղանկարիչների կողմից:

***– Ի՞նչ գործունեությամբ է զբաղվում Գեորգի Թովմասյան ֆոնդը և ինչպե՞ս պատահեց, որ ցուցահանդեսին ներկայացվեցին հենց վանաձորցի ստեղծագործողները:***

– Ֆոնդը ստեղծվել է երջանկահիշատակ գեղանկարիչ Գեորգի Թովմասյանի մահից գրեթե անմիջապես հետո, որի հիմնադիրը գեղանկարչի թոռն է՝ Մենուա Մկրտչյանը: Փորձելով հավատարիմ մնալ պապի որդեգրած ստեղծագործական քաղաքականությանը՝ Մենուան շարունակում է ուշադրության կենտրոնում պահել հատկապես երիտասարդ օժտված արվեստագետներին՝ նրանցներկայացնելով ինչպես Վանաձորում և հանրապետությունում, այնպես էլ նրա սահմաններից դուրս: Բացի արտերկրում կազմակերպվող տարաբնույթ ցուցահանդեսներից, Մենուա Մկրտչյանն ամեն տարի Վանաձորում նախաձեռնում է Գեորգի Թովմասյանի հիշատակին նվիրված ցուցադրություններ՝ վերջիններիս խրախուսելով նաև դրամական պարգևով: Ի դեպ, նշեմ նաև, որ ընկեր Թովմասյանի անմիջական ջանքերով ու նախաձեռնությամբ է հիմնադրվել ՎՊՄԻ գեղանկարչության ամբիոնը:

***– Ցուցահանդեսին մասնակցելով՝ դուք ավելի շատ շեշտը դրել***



***էիք կտավները վաճառելու միջոցով հասույթ ստանալո՞ւ համար, թե՞…***

– Միանշանակ՝ «թե»: Ինչպես բոլոր երիտասարդ արվեստագետների, այնպես էլ մեզ համար որքան էլ արդիական է կեցության խնդիրը, այնուամենայնիվ, առավել կարևոր է ճանաչված լինելու հանգամանքը: Ահա սա էր պատճառը, որ մենք կազմակերպել էինք ցուցահանդես և ոչ ցուցահանդես վաճառք: Անհամեստ չթվամ, բայց կտավները գնելու առաջարկներ շատ եղան, սակայն մենք ի սկզբանե որոշել էինք մերժել դրանք, քանի որ ունենք հեռահար այլ գաղափարներ, որոնք կարող են կյանքի կոչվել միմիայն մեր ստեղծագործությունների առատության ու որակի շնորհիվ: Մենուայի առաջարկով բոլոր կտավները ես թողեցի Ռուսաստանի Դաշնությունում՝ այնտեղ առաջիկայում սպասվող ցուցահանդեսներին ևս ներկայացնելու համար:

⊃17

**16Ͻ**















***– Ի՞նչ խնդիրներ ունի երիտասարդ արվեստագետը և ինչպե՞ս եք պատկերացնում դրանց լուծումները:***

– Այսօրվա երիտասարդ նկարիչներն ունեն ցուցադրվելու խնդիր, ոչ այնքան հանրապետությունում, որքան նրա սահմաններից դուրս, քանի որ այն կարող է կրկնակի օգտակար ու շահավետ լինել: Ցուցադրվելուն զուգահեռ, նրանք նաև հնարավորություն կունենան ծանոթանալու իրենց հասակակիցների գործերին և ամենակարևորը կներկայացնեն ազգային ժամանակակից արվեստը համաշխարհային արենայում: Հարկավոր է պահպանել մեր ավագների վաստակած հարգանքն ու հռչակը և ևս մեկ անգամ հավաստել, որ Հայաստանն իսկապես արվեստի, արժեքների ու արժեքավոր երկիր է:

***HayNews.am***

## *Նամակ խմբագրությանը*

**Հարգելի խմբագրություն**

Ձեզ գրում է Վանաձոր քաղաքի բնակչուհի մանկավարժ Լենա Մակարյանը:

Հայրենական Մեծ պատերազմի հետքերը դրոշմված են պատերազմի մասնակից, հերոսացած հայերի, երեխաների վրա: 1941 թվականին, երբ հայրս կամավոր մեկնեց պատերազմ, ես 3 տարեկան էի: Այդ ժամանակ Կիրովական, այժմ Վանաձոր քաղաքում աչքի ինֆեկցիոն մանկական հիվանդություն է տարածվում, որից զերծ չի մնում մեր ընտանիքը նույնպես:

Անփույթ բժշկի սխալ դեղ օգտագործելու պատճառով այդ տարի կուրանում է մոտավորապես 200 երեխա: Ինձ անմիջապես տեղափոխում են Երևան և ակնաբույժ Մելիք Մուսյանի շնորհիվ փրկվում եմ կուրացումից: Սակայն աջ աչքիս բիբի վրա մնաց այրված հետք, որը չխանգարեց ինձ 45 տարի շարունակ մանկավարժ աշխատելու:

Թոշակի անցնելուց հետո 2013 թ. զգացի աչքիս լույսի նվազում (մթագնում): Դիմեցի Երևանի Ս. Վ. Մալայանի անվան հանրապետական ակնաբուժական կենտրոնի աչքի բորբոքային հիվանդությունների բաժանմունքի վարիչ, բ.գ.դ., դոցենտ Աննա Վիկտորի Հովակիմյանին: Երկար զննումից հետո Աննա Վիկտորովնան որոշեց ինձ վերադարձնել իմ աչքի լույսը վիրահատության միջոցով:

Բժիշկ... որքան մարդասիրություն, հույս ու հավատ է իր մեջ պարունակում այս մեկ հատիկ բառը: Եվ ինչ սպասումներով են մարդիկ արտասանում այն: Մարդ, որի կարիքը զգում ենք յուրաքանչյուրս մեր կյանքի ընթացքում: Մարդ մեծատառով, և ինչը կարող է ավելի



արժեքավոր լինել, քան մարդկային կյանքը ու հավատը ապագայի նկատմամբ, որը հիվանդին կարող է տալ միայն բժիշկը:

Հարգելի խմբագրություն, ուզում եմ Ձեզ հետ կիսել իմ ապրումները և ուրախությունը: Ուզում եմ խորին շնորհակալություն հայտնել ՀՀ առողջապահության նախարարության Ս. Վ. Մալայանի անվան ակնաբուժական կենտրոնի տնօրեն Ալեքսանդր Սերգեյի Մալայանին, աչքի բորբոքային հիվանդությունների բաժնի վարիչ Աննա Վիկտորի Հովակիմյանին, բաժանմունքի բուժքույր Մերի Գրիգորյանին և ամբողջ սպասարկող անձնակազմին, բարի ու սրտացավ վերաբերմունքի համար:

Կրկին անգամ շնորհակալություն Ձեզ, Աննա Վիկտորովնա, աշխարհն իր գույներով ինձ տեսանելի դարձնելու համար: Ինձ համար Դուք միայն բժշկուհի չեք, այլ իսկական Մարդ մեծատառով, որին չի փոխել մեր տխուր իրականությունը:

***Լենա ՄԱԿԱՐՅԱՆ***

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ

**Իմ հոգին լալիս է անձայն...**

Իմ հոգին լալիս է անձայն,
Սիրտս է նրան լսում միայն...
Մտքերս քեզ հետ են միշտ, բալես,
Բայց ինչու ես լռում այսքան՝
Կարծես թե ակամա լալկել ես...

Մի՞թե մոռացել ես իմ սերը,
Նվիրված աչքերիս վառ լույսերը՝
Երբ քեզնով էի ապրում ողջ էությամբ...
Մի՞թե կորան այն հույզերը,
Որ համակում էին երկուսիս՝
Սար ու ձոր ձեռք ձեռքի տված անցնելիս...

Ինչ դաժան ես դու, աստված,
Սերն ու հավատն քեզ տված,
Բալիս սևաչյա ինձնից կտրեցիր,
Չար ոգու շեմը գործ նետեցիր...

**Կարծես դա երեկ էր...**

Ես բանաստեղծ չեմ, ոչ, ավաղ, –
Հոգուս մեջ միայն թե կա մի վախ,
Որ կորցրեցի ամեն ինչ՝
Ինչ սրբացած էր ինձ համար վաղուց,
Իսկ հիմա – մենություն, ոչինչ...

Կարոտում եմ քո ձայնը քնքուշ,
Մի քիչ անպատկառ, մի քիչ անխոհեմ,
Բայց եղել եմ միշտ քեզ հետ մեղմ՝
Որովհետև սիրել եմ, սիրել հույժ...

Երազում տեսնում եմ քեզ միշտ՝
Գրկախառնվում, համբուրում անվերջ
Քո թմբլիկ այտերը նուրբ, աչերն անվիշտ,
Եվ փախչում ես դու ինձնից անլուրջ:

Ես արթնանում եմ սարսափով՝
Չկաս ոչ երազում, ոչ կողքիս...
Հիշում եմ զբոսանքները Զանգվի քարափով՝
Կարծես դա երեկ էր, բալես սիրելիս...

**Ինձ պահպանող լեռանը**

Ախ, Արարատ, իմ սեր, էլ ես ինչ ասեմ,
Երբ քեզ երգել են Չարենցն ու Շիրազը,
Հոգուս մեջ կա հավերժ քո լարը վսեմ,
Կարծես հնչում է Սայաթ-Նովայի չքնաղ սազը...
Հայաստան աշխարհ՝ կարծես անիծված,
Էլ ի՞նչ չտեսար դու չար այս դարում՝
Կոտորած, մահ, ցուրտ, սով ու մութ,
Ասես բախտիդ վրա իջել էր սև իրիկնամուտ...

Դիմացանք՝ և դարդին-ցավին,
և երկրաշարժին,
Մոմի տակ «Սասունցի Դավիթ»
կարդացինք նորեն,
Իսկ լուսաբացին քո պարզ,
ճերմակ գագաթին
Մեր կյանքի իմաստն գտանք
սառնասրտորեն...
Ախ, Արարատ, դու գերող պահապան
վեհ սար,
Քեզ նայելով, չես կարող գնալ աշխարհի
այլ ծայր,
Մեր սուրբ հողի ու տանջված հոգու
գանձասար...

**Երեւանին**

Ես իմ սիրուն քաղաքին
Թշվառ լեզվով ինչ՞ ասեմ...
Ինչ՞ խոսքերով ես գովեմ
Քո ջինջ օդը, երկինքն կապույտ,
Ջուրը անուշ, սառնորակ...
Արարատը ձեռքիդ տակ...
Երևանյան փողոցների ու մայթերի,
Սանուկների, ջահելների, ահելների
Համն ու հոտը,
Մի քիչ կոպիտ, մաքուր սրտով,
ասած խոսքը,
Գավառական մեղմ ժպիտը...
Զանգվի ձորը, հով դալանը,
Կարմիր թութը ու ծիրանը,
Սարի ծամոն ծախող պապը,
Սև շուկայի մանչուկի կճուճով
«սառը ջուրը» ...
Կրակ թափող արևի տապը,
Որ ասֆալտն է ոտքերիդ տակ հալեցնում,
Ահա սա է Երևանը,
Որ գնացել է ու... հավերժ մնում...

***Ռոբերտ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ***

## 2013թ-ի աշխարհի 10 ամենաիեղինակավոր հայերը

TIME TO ANALYZE-ն կազմել է աշխարհի 10 ամենաhեղինակավոր հայերի ցանկը:

Ցանկում տեղ են գտել՝

1. «MetLife» ընկերության նախագահ, ամերիկաբնակ Սթիվեն Կանդարյանը,
2. ԱՄՆ-ում Մեքսիկայի արտակարգ և լիազոր դեսպան Արտուրո Սարուխանը,
3. «BOGH-ART» լյուքս դասի հուշանվերներ արտադրող ընկերության նախագահ Ալբերտ Պողոսյանը,
4. «Global Bakeries» ռեստորանների ցանցի հիմնադիր, ամերիկաբնակ Ալբերտ Բոյաջյանը,
5. «BahaMar» Կարիբյան երկրներում հայտնի հանգստավայրի սեփականատեր Տիգրան Իզմիրլիյանը,
6. «Aeropuertos Argentina 2000» ընկերության ղեկավար Էդուարդո Էռնեկյանը,
7. Ֆրանսիայի պատգամավոր Պատրիկ Դևեջյանը,
8. «Tracinda Corporation»-ի հիմնադիր Քըրք Քըրքորյանը,
9. «Hovnanian Enterprises, Inc»-ի հիմնադիր Հրայր Հովնանյանը,
10. Կալիֆոռնիայի հայտնի քաղաքական գործիչ Ջորջ Դոկմեջյանը:

# Где учат армянских священников
## Академия «Геворгян»– хранитель древних традиций



Эчмиадзинская духовная академия – это Богословский университет, современное высшее учебное заведение, интегрированное в Болонскую систему, где обучаются шесть лет, получая сначала диплом бакалавра – после 4 лет учебы, а затем магистра – спустя еще два года. При этом обучение в академии является обязательным. Вместе с тем, Академия «Геворгян» – хранитель древних традиций.

Еще во времена принятия христианства в Армении при Григории Просветителе здесь были созданы первые духовные школы. Именно армянские школы были открыты благодаря создателю нашего алфавита Месропу Маштоцу и Сааку Партеву. А семинария "Геворгян" была основана в 1784 году католикосом всех армян Геворгом IV Константинопольским с целью подготовки духовников для армянского народа и названа в честь Св. Великомученика Геворга. В советские времена ее возродил католикос Геворк VI, а покровитель этого учебного заведения – Святой Великомученик Геворк (или Георгий) Победоносец.

Ректором объединённого духовного образовательного центра Первопрестольного Святого Эчмиадзина, куда входят Академия «Геворгян», Аричаванка (Трбаджян по имени мецената и Севанская семинария «Вазгенян»), сегодня является епископ Геворг Србазан.

Србазан Геворг очень молодой епископ. После семинарии Геворгян учился в Британском университете, степень магистра получил после учёбы в Оксфорде. Он отличается скромностью, как и подобает духовнику, но и обладает необычайным опытом в своём деле и является блестящим креативным организатором. Благодаря его энергии и труду сейчас действуют две кафедры, и он собирается открыть ещё несколько, при этом создаёт новую структуру Академии, организовал курсы для пожилых священников, где они могут получить соответствующее образование до 50 летнего возраста.

Ректор подумывает расширить обучение русскому языку до 4 лет вместо двух, явно недостаточных. Заразившись его планами, я предлагаю создать у них курсы для изучения истории Армянской Церкви для всех желающих. А во всех своих начинаниях Србазан чувствует твёрдую поддержку католикоса Гарегина Второго.

Геворг Србазан с глубокой благодарностью рассказывает о том, какую огромную роль в оснащении классов сыграли Владыка Армянской епархии Езрас Србазан и наши соотечественники из России: предприниматели Грачья Погосян, полностью оснастивший Севанскую семинарию, и Карен Мкртчян в Академии Эчмиадзина.

В истории Академии (до недавнего времени семинарии «Геворгян») было немало сложных периодов. Например, в 1917, в связи с революцией и приходом большевиков к власти, она закрылась. Но благодаря политике Армянской Церкви во время Великой Отечественной войны – а на средства армянской диаспоры был сформирован целый танковый эшелон – власти СССР разрешили открыть академию, что и сделал католикос Геворк VI. Сегодня же здесь обучаются, если быть точным, 156 студентов, которые изучают более 45 предметов.

Они разделены на бакалавров и магистров. Изучают как арменоведческие, так и религиозные дисциплины. Обучение здесь круглогодичное, в течение шести лет.

Есть как духовные преподаватели, которые имеют научные степени, признаваемые по всему миру, так и специалисты по арменоведческим дисциплинам. «В основном, преподаватели приходят к нам из государственных университетов», – рассказывает ректор. Студентами семинарии являются не только жители Армении и Карабаха, сюда приезжают получить образование также из-за границы: из России, Грузии, Сирии, Дании, Голландии, Германии, из Константинопольской Патриархии и многих других стран.

По инициативе Его Святейшества Гарегина II Духовная академия «Геворгян» (Богословский университет) признана правительством РА как высшее учебное заведение. Кроме академии, в её систему входят также Севанская духовная семинария «Вазгенян», семинария Арича «Трбаджян» (Старшая школа). В Духовную семинарию «Геворгян» могут поступить граждане РА и армяне диаспоры до 21 года, которые имеют среднее или высшее образование и являются чадами Армянской Апостольской Святой Церкви.



В Академии довольно серьёзно поставлено изучение языков. Сегодня мы расскажем о преподавании русского языка. Изучение русского приобретает особое значение, если учесть, сколько новых приходов и церквей появилось в России за последнее десятилетие. По-видимому, не в состоянии остановить миграцию соотечественников в Россию, церковь и тут оказалась с народом, ибо только она может помочь армянину сохранить язык и национальные традиции.

В Академии действует великолепный оборудованный новейшей аппаратурой кабинет, кстати, такой кабинет есть в семинарии «Вазгенян».

А сейчас предоставим слово педагогу русского языка, кандидату филологических наук, доценту Государственного Лингвистического университета имени Брюсова Милане Саркисовой.

Она чуть-чуть поправляет меня: «У нас в Духовной академии «Геворгян» и в семинарии «Вазгенян» Первопрестольного Святого Эчмиадзина действуют кабинеты усовершенствования русского языка». И тоже начинает с благодарности тем самым предпринимателям, о которых рассказывал Отец Геворг. Она считает, что наши соотечественники из Санкт-Петербурга адресно направили

⊃20

свои средства, осознавая значимость владения русским языком будущими священнослужителями нашей церкви, что является важным фактором в образовании семинаристов. И добавляет:

– Их труды ценят, в первую очередь, сами студенты, а такое благое дело может служить примером для многих, кто неравнодушен к образованию нашей молодёжи, особенно для будущих священнослужителей Армянской Апостольской Церкви. Вообще, наши меценаты – это преданные люди, желающие содействовать армянской церкви и развитию её будущего. Это патриоты, безвозмездно отдающие частичку себя, и мы видим, что мир не так плох, что есть ещё верные своей родине армяне.

Мы обучаем русскому языку всего два года. Стараемся дать уровень, соответствующий европейскому стандарту, хотя времени мало, но студенты очень усердно учатся русскому языку. Ребята приходят в Академию с разным уровнем знания языка. У некоторых он в ужасном состоянии. Но все зависит не только от преподавателя, но и от желания самих студентов. Есть ребята, которые, зная это, подходят, просят дополнительную литературу, постоянно консультируются со мной. Но есть скованные и замкнутые ребята, которых приходится раскрыть, заинтересовать, дать понять, что будущему священнослужителю владеть русским языком просто необходимо. Вообще, представляется, что знание языков для священнослужителей обязательно. Но студенты, хорошо владеющие языком, должны заниматься переводами. Ведь есть очень большой пласт религиозной и богословской литературы на русском языке, которую необходимо прочитать.

Изучение языков поставлено очень серьезно, благодаря нашему ректору епископу Геворгу, который является также руководителем духовных учебных заведений Первопрестольного Святого Эчмиадзина. Владыка коренным образом изменил отношение к обучению русскому языку: повысился уровень знаний, которые стали более качественными. При содействии мецената, предпринимателя Грачья Погосяна из Санкт-Петербурга, в Севанской духовной семинарии «Вазгенян» был открыт кабинет усовершенствования русского языка, а при поддержке председателя армянской диаспоры Санкт-Петербурга Карена Мкртчяна такой же кабинет был оборудован в Духовной академии «Геворгян». Благодаря им была приобретена необходимая литература и учебные материалы ведущих российских издательств.

Мы стараемся дать студентам дополнительную информацию о русской культуре. Этого нет в программе, но я считаю, что тот визуальный добавочный материал, который приподносится нами, еще более способствует пробуждению в студентах интереса к русскому языку, к русскому народу, к России. Тем более, что кто-то из этих ребят впоследствии будет служить в России.

Для меня работа в семинарии – это, прежде всего, духовная деятельность. На нас возлагается ответственность не просто за обучение, но и за воспитания будущих священников. И мы должны думать о будущем нашей нации. Это большая ответственность. Многие дети поступают сюда после окончания школы, только-только входят в жизнь, а специфика этого учебного заведения предполагает много ограничений, ведь в этом плане студенты светских учебных заведений отличаются большей свободой. И администрация Семинарии прилагает много усилий, чтобы студенты знали, куда они пришли.

Узнав, что к ним пришла автор книги о Вазгене Первом на русском языке, семинаристы постепенно собираются. Во время презентации новый, недавно отстроенный зал был полон семинаристов, и, по словам Геворга Србазана, они были очень впечатлены рассказами о Веапаре Вазгене Первом. Мы с Миланой обращаемся к ним, просим поделиться своим мнением о кабинете, семинарии и своей учёбе в Эчмиадзине.

Первым рассказывает о себе ясноглазый семинарист, не откуда-нибудь, а из самого Чалтыря! Миран Багдасарян с семи лет полюбил церковь, куда бегал к своей бабушке, работающей там свечницей. Уже в 10 лет он твёрдо решил стать священником. В классе знали об этом и даже немножко завидовали, когда он, узнав, что в Армении есть духовная Академия для армян, сразу после ЕГЭ поехал в Эчмиадзин.

– Я их звал с собой, и сын нашего священника приехал, сейчас учится в семинарии «Вазгенян». У нас очень хорошие преподаватели! – радуется юноша, оказавшийся на святой земле Эчмиадзина, где всё дышит веками нашей веры.



А семинарист Давид Саакян, приехавший из Калуги, родом из Ташира, сразу приступил к делу:

– Пожалуйста, когда увидите Езраса Србазана, попросите его, чтобы построил Армянскую церковь в Калуге, там нет армянской церкви! Например, мои сёстры и много других калужских армян хотят креститься, вынуждены в русской церкви это делать.

– А вы пока приезжайте за этим в Москву!

– Нет, много людей без регистрации, боятся выезжать далеко!

Давид год отучился в Аричаванке, там тоже духовная семинария, где обучаются три года. В Духовной семинарии Аричаванка учатся семинаристы по программе старшей школы. Можно сказать, они готовятся поступить в семинарию, получают более глубокое представление о семинарии и духовной жизни вообще. Юный семинарист Давид, уже студент I курса Духовной академии «Геворгян», помогает остальным усваивать русские слова и выражения, занимается с отстающими. То же самое делает и Миран, на курсе они двое из России, и это большая помощь для сокурсников. Семинаристы понимают слово дружба и стараются её выразить по отношению друг к другу в студенческой жизни, в бытии семинариста.

Самое главное, они сейчас хорошо слышат русскую речь и хором объясняют свои успехи своей замечательной преподавательницей Миланой Юрьевной.

Давид зовёт меня в Арич, где «такая красота!», только не зимой, там очень холодно, они сами чистили дороги от снега, который покрывает высотой на метр всё вокруг. Летом многие приезжают: и армяне, и иностранцы. В Ариче несколько церквей, св. Богородицы и Григора Лусаворича. Давид влюблён в Арич, ещё раз приглашает и вспоминает те чудесные дни, которые он провел там.

Арташес Балабекян выучился русскому здесь, в семинарии. Поэтому он сразу начинает благодарить Милану, которая, видно, здесь общая любимица. Потом хором благодарят своих русскоязычных друзей, Давида и Мирана, которые занимаются с ними, пропагандируют русский язык, рассказывают им о тамошних обычаях, что крайне важно знать священнику.

Арташес объясняет, что Милана задаёт им много стихотворений учить наизусть, поэтому они так быстро выучили много слов. Но всё равно, два года мало, было бы лучше, если б подольше.

Гюмрийский студент Ованес Хачатрян живёт в одной комнате с Давидом и, благодаря этому, довольно бегло разговаривает на русском.

Милана рассказывает, что семинаристы выполняют и научную работу, с подачи Геворга Србазана (говорю же, креативный!). Они подготовили замечательный армяно-русский словарь церковно-литургических терминов. И очень активно участвовали в создании текстов и комментирующих переводов. Словарь уже в типографии, все с нетерпением ждут, когда напечатают.

После встречи с семинаристами на душе стало хорошо и покойно. Будущие священники уже сейчас очень серьёзно относятся к своему выбору и предназначению. И верится, что они всю жизнь будут верны этому великому служению.

